ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ

1

ՀՈՒՆՎԱՐ

ԵՐԵՎԱՆ • 1977

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

1

ՀՈՒՆՎԱՐ 1977

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«Ленинян угиов» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ





# ԸՆԿԵՐ ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԻՆ

Թանկագին Լեոնիդ Իլյի՛չ:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահությունը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը Ձեր յոթանասնամյակի օրը ջերմորեն և ի սրտե ողջունում են Ձեզ՝ սովետական ժողովրդի հավատարիմ զավակին, կոմունիստական կուսակցության, սովետական պետության և միջազգային կոմունիստական շարժման ականավոր գործչին, խաղաղության և սոցիալական առաջադիմության բոցաշունչ մարտիկին, հետևողական մարքսիստ-լենինյանին:

Ձեր անխոնջ ու բեղմնավոր գործունեությունը, Լեոնիդ Իլյիչ, հայրենիքին, լենինյան կուսակցությանը, կոմունիզմի գործին անձնվիրաբար ծառայելու ոգեշնչող օրինակ է: Այն բոլոր պոստերում, ուր Ձեզ առաջ է քաշել կուսակցությունը, բոլոր այն պատասխանատու խնդիրների լուծման գործում, որոնք նա Ձեզ հանձնարարել է, Դուք միշտ էլ պատվով եք արդարացրել և արդարացնում եք ցույց տրված վստահությունը:

Ձեր անսպառ եռանդը, կուսակցական սկզբունքայնությունը, ժողովրդի կյանքի հետ անխզելի կապը խոր ակունքներ ունեն: Պատանեկան տարիներին կանգնելով աշխատանքի մեծ բանակի շարքում, Դուք, Լեոնիդ Իլյիչ, միլիոնավոր հասակակիցների հետ վստահորեն առաջ էիք ընթանում սովետական իշխանության բացած ճանապարհով, գործարանում կատարած աշխատանքը զուգորդելով գիտելիքների հաստատակամ տիրապետման հետ: Բանվորական կոլեկտիվում անցկացրած կյանքը Ձեզ տվեց աշխատավորների խոհերի և իղձերի խոր ըմբռնում: Որպես բանվոր, ինժեներ, կուսակցական աշխատող, Դուք առաջին հնգամյակների տարիներին միշտ գտնվում էիք սոցիալիստական ինդուստրիայի և կոլտնտեսային կարգերի զարգացման հարվածային ուղղություններում:

Երբ ֆաշիստական Գերմանիայի ավազակային հարձակումը մեր հայրենիքին կանգնեցրեց մահացու վտանգի առաջ, Դուք Հայրենական մեծ պատերազմի առաջին օրերից կանգնեցիք ռազմիկների շարքերում և կռվեցիք մինչև լիակատար հաղթանակը: Կովկասի ճակատամարտը, առասպելական «Մալայա Զեմլյան», հիտլերյան օկուպանտների վռնդումը Ղրիմից, Ուկրաինայից, Լեհաստանի, Հունգարիայի, Չեխոսլովակիայի ազատագրումը՝ այսպիսիք են այն բանակների փառահեղ ճանապարհի ուղենիշները, որոնց ճակատամարտերում դրսևորվեցին նաև Ձեր մարտական սխրագործությունն ու անձնական արիությունը, որի համար հայրենիքը Ձեզ արժանացրեց Սովետական Միության հերոսի կոչման:

Հայրենական մեծ պատերազմից հետո Դուք, որպես կուսակցության Զապորոժիեի, իսկ ապա Դնեպրոպետրովսկի մարզկոմների առաջին քարտուղար, Ձեր ուժերը նվիրաբերեցիք այդ խոշոր ինդուստրիալ կենտրոնների վերականգնմանը, անմիջական մասնակցություն ցուցաբերեցիք Վ. Ի. Լենինի անվան հռչակավոր Դնեպրոգէսի և մետալուրգիայի հսկայի՝ «Զապորոժստալի» վերածնմանը:

Մոլդավիայի և Ղազախստանի աշխատավորները քաջ գիտեն, թե Դուք, Լեոնիդ Իլյիչ, գլխավորելով այդ միութենական հանրապետությունների կուսակցական կազմակերպությունները, որքան շատ ջանքեր, նախաձեռնություն ու հաստատակամություն եք ներդրել նրանց արդյունաբերության, գյու-

ղատնտեսության և կուլտուրայի զարգացման գործում: Ղազախստանի խո-
պան հողերը երկրի խոշոր շտեմարանի վերածելը նրա պատմության մեջ է
մտել իբրև հոյակապ էպոպեա, որի մեջ արձանագրված են նաև Ձեր անունը,
Ձեր ակնառու ավանդը:

Հետագա տարիներին, լինելով ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ,
Կենտկոմի քարտուղար և զբաղվելով ծանր, պաշտպանական արդյունաբերու-
թյան, շինարարության հարցերով, Դուք ակնառու դեր խաղացիք հայրենիքի
ինդուստրիալ և գիտատեխնիկական պոտենցիալի աճի գործում, նրա պաշտ-
պանական հզորության ամրապնդման, տիեզերքի յուրացման հետազոտու-
թյունների կազմակերպման գործում: Հայրենիքն ըստ արժանվույն գնահատեց
Ձեր ծառայությունները, Լեոնիդ Իլյիչ, Ձեզ շնորհելով սոցիալիստական աշ-
խատանքի հերոսի կոչում:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահի պոստում Դուք
շատ ուժեր նվիրեցիք սովետական պետության հետագա ամրապնդման և սո-
ցիալիստական դեմոկրատիայի զարգացման գործին:

Կուսակցության և ժողովրդի կողմից Ձեր, որպես լենինյան տիպի ղեկա-
վարի, հեղինակության բարձր ճանաչումը եղավ կուսակցության Կենտրոնա-
կան կոմիտեի 1964 թվականի հոկտեմբերյան պլենումում Ձեզ, թանկագին
Լեոնիդ Իլյիչ, ՍՄԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընտրելը, իսկ ՍՄԿԿ
XXIII համագումարն ավարտվելուց հետո Կենտրոնական կոմիտեն Ձեզ ընտ-
րեց Կենտկոմի գլխավոր քարտուղար:

Այդ պահից ի վեր, ահա արդեն ավելի քան 12 տարի, մեր կուսակցու-
թյան և ժողովրդի կյանքի բոլոր գլխավոր իրադարձությունները, Սովետական
Միության լենինյան ներքին և արտաքին քաղաքականության հաջողություն-
ները կապված են ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղարի
պոստում Ձեր բեղմնավոր գործունեության հետ: Դուք, Լեոնիդ Իլյիչ, ակնառու
ավանդ եք մուծում կուսակցության լենինյան գլխավոր կուրսի մշակման և
իրականացման մեջ, որի ճշտությունն ու արդարացիությունը հաստատվում
են մեր հայրենիքի և համաշխարհային պատմական պրոցեսի զարգացման
ողջ ընթացքով:

Դրանք եղել են Սովետական Միության ժողովրդական մասսաների
ստեղծարար եռանդի հզոր, աճշեղ վերելքի տարիներ, մասսաներ, որոնք
կոմունիստական կուսակցության և Ձեր, Լեոնիդ Իլյիչ, գլխավորած Կենտ-
րոնական կոմիտեի իմաստուն ղեկավարությամբ իրականացնում էին իրենց
թափով ու խորությամբ վիթխարի սոցիալ-տնտեսական վերափոխություններ,
կառուցում զարգացած սոցիալիստական հասարակարգը: Կուսակցության և
ժողովրդի հերոսական ջանքերով ստեղծվեց սովետական հայրենիքի նյու-
թական և հոգևոր հսկայական պոտենցիալը: Իր քաղաքական ու տնտեսա-
կան արդյունքներով նշանավոր եղավ իններորդ հնգամյակը, որը խոշոր փուլ
էր կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, ժողովրդի կյանքի
նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացման, երկրի պաշտպա-
նության և անվտանգության ապահովման գործում:

Այդ տարիներին ավելի ու ավելի միաձույլ դարձավ բանվոր դասակար-
գի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության դա-
շինքը, ավելի ու ավելի սերտ և անխզելի՝ Սովետական Միության ժողովուրդ-
ների եղբայրական բարեկամությունը: Սովետական պետությունը դարձավ
համաժողովրդական պետություն, և սոցիալիստական դեմոկրատիայի, մեր
ամբողջ հասարակական սիստեմի հետևողական զարգացման մեջ համոզիչ
կերպով դրսևորվում է ժողովրդական մասսաների պատմա-հեղափոխական
ստեղծագործության մեծ ուժը:

Սովետական Միության կոմունիստական կուսակցության XXV համա-
գումարը նշանավորեց պատմական նոր բնագծեր դեպի կոմունիզմ մեր հայ-
րենիքի հոյակապ հաղթական առաջընթացի ճանապարհին:

Կուսակցության ծրագրային փաստաթուղթ է «ՍՄԿԿ Կենտրոնական կո-
միտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու



արտաքին քաղաքականության բնագավառում» զեկուցումը, որով հանդես
եկաք Դուք, Լեոնիդ Իլյիչ: Նրանում տրված է մեր դարաշրջանի կարևորա-
գույն պրոցեսների, կուսակցության և ժողովրդի հեղափոխական վերակերտիչ
գործունեության, համաշխարհային հեղափոխական պրոցեսի ընթացքի խոր
ու համակողմանի վերլուծությունը, բացահայտված են դրանց օրինաչափու-
թյունները ու հեռանկարները, առաջ են քաշված արդի պատմական փուլում
լենինյան ներքին ու արտաքին քաղաքական կուրսի արմատական խնդիր-
ները:

Մեր կուսակցությունը և նրա Կենտրոնական կոմիտեն Ձեր գլխավորու-
թյամբ, Լեոնիդ Իլյիչ, անդուլ հոգատարություն են ցուցաբերում սովետական
ժողովրդի կյանքի մշտական բարելավման նկատմամբ: ՍՍՀՄ ժողովրդական
տնտեսության զարգացման 1976—1980 թվականների՝ համագումարի մշակած
հիմնական ուղղությունների և դրանց համապատասխան ընդունված տասնե-
րորդ հնգամյա պլանի գլխավոր խնդիրն է անշեղորեն բարձրացնել ժողովրդի
բարեկեցությունը՝ հանրային արտադրության դինամիկ և համամասնական
զարգացման, նրա արդյունավետության բարձրացման, գիտատեխնիկական
առաջադիմության արագացման, աշխատանքի արտադրողականության
բարձրացման, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում աշխատանքի
որակի ըստ ամենայնի բարելավման հիման վրա:

ՍՄԿԿ XXV համագումարը ջերմորեն ու միահամուռ հավանություն տվեց
ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի քաղաքական գծին ու պրակտիկ գործունեու-
թյանը, Կենտկոմի հաշվետու զեկուցմանը, որպես գործողության ուղեցույց
ընդունելով Ձեր առաջադրած դրույթներն ու խնդիրները: Համագումարը հզոր
ազդակ եղավ սովետական մարդկանց քաղաքական և աշխատանքային ակ-
տիվության նոր խանդավառության համար, որոնք համագումարի որոշումները
ընդունեցին որպես իրենց գործունեության ծրագիր: Նրանք է՛լ ավելի սեր-
տորեն համախմբվեցին կուսակցության և նրա Կենտրոնական կոմիտեի
շուրջը:

Կոմունիստական շինարարության հաջողությունների հետ է անխզելիո-
րեն կապված համաշխարհային ասպարեզում Սովետական Միության հեղի-
նակության և ազդեցության ամրապնդումը: Մեր հայրենիքի միջազգային դրու-
թյունը կայուն է, ինչպես երբեք: Անընդհատ զարգանում են մեր եղբայրական
բարեկամությունն ու սերտ կապերը համաշխարհային սոցիալիստական հա-
մագործակցության երկրների հետ, որոնք զոդված են կոմունիստական կու-
սակցությունների մարտական դաշինքով՝ մարքսիզմ-լենինիզմի, պրոլետա-
րական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա: Ամրապնդվում է
ՍՄԿԿ-ի համախմբվածությունը կոմունիստական, բանվորական կուսակցու-
թյունների հետ, իմպերիալիզմի դեմ, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիա-
լիզմի համար մղվող պայքարի համաշխարհային ճակատի մասնակիցների
բոլոր ջոկատների հետ: Հարաճուն համերաշխության, բարեկամության և
փոխըմբռնման ոգով են ներթափանցված Սովետական Միության հարաբերու-
թյունները զարգացող երկրների, այն բոլոր ժողովուրդների հետ, որոնք պայ-
քարում են հանուն քաղաքական ու տնտեսական անկախության, հանուն խա-
ղաղության և ազատության գործի:

Վերջին տարիներս մեր հայրենիքը, անշեղորեն հետևելով լենինյան
խաղաղասիրական կուրսին, սոցիալիզմի եղբայրական երկրների և մյուս
խաղաղասեր ուժերի հետ հաջողությունների է հասել ժողովուրդների խաղա-
ղության ու անվտանգության ամրապնդման գործում: ՍՄԿԿ XXIV համա-
գումարում Ձեր, Լեոնիդ Իլյիչ, առաջ քաշած խաղաղության ծրագիրը հզոր
դրական գործոն է դարձել միջազգային հարաբերությունների առողջացման,
դեպի լարվածության թուլացում շրջադարձ կատարելու և տարբեր սոցիա-
լական կարգեր ունեցող պետությունների միջև խաղաղ գոյակցության սկզ-
բունքներն է՛լ ավելի ամուր հաստատելու գործում, սկզբունքներ, որոնց հա-
մար պայքարում էր Վ. Ի. Լենինը:

Սովետական մարդիկ, երկրագնդի բոլոր ազնիվ մարդիկ ոգևորությամբ

ընդունեցին ՍՄԿԿ XXV համագումարում Ձեր շարադրած խաղաղության և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար հետագա պայքարի ծրագիրը, որտեղ մարմնավորված է ՍՄԿԿ-ի և սովետական ժողովրդի միասնական կամքը՝ պաշտպանելու և ամրապնդելու խաղաղության և մարդկության առաջադիմության գործը, վերացնելու համաշխարհային ջերմամիջուկային պատերազմի սպառնալիքը:

Սովետական մարդիկ հպարտանում են, որ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, Կենտկոմի քաղբյուրոյի և անձամբ Ձեր, Լեոնիդ Իլյիչ, արտաքին քաղաքական գործունեության ամեն մի քայլ նվիրված է այդ ազնիվ, մարդասիրական նպատակների իրականացմանը: Խաղաղության ոգեշունչ, կրքոտ պայքարի շնորհիվ Դուք արժանացել եք երկրագնդի բարի կամքի տեր բոլոր մարդկանց երախտագիտությանը, որն իր արտահայտությունը գտավ Ձեզ «Ժողովուրդների խաղաղությունն ամրապնդելու համար» լենինյան մրցանակ շնորհելու և Ֆ. Ժոլիո-Կյուրիի անվան խաղաղության ոսկե մեդալով պարգևատրելու մեջ:

Իմպերիալիստական հետադեմ ուժերն ամեն կերպ արգելակում են միջազգային լարվածության թուլացման պրոցեսը և շարունակում սպառազինությունների մրցավազքը: Ուստի, սովետական պետությունը, կուսակցությունը և նրա Կենտրոնական կոմիտեն անդուլ հոգատարություն են ցուցաբերում, որպեսզի պատշաճ մակարդակի վրա պահեն մեր հայրենիքի պաշտպանությունը: Անձամբ Դուք, Լեոնիդ Իլյիչ, պաշտպանության խորհրդի նախագահի պոստում մեծ ավանդ եք ներդնում մեր փառապանծ զինված ուժերի կատարելագործման ասպարեզում:

Մեր կուսակցության ամբողջ գործունեության, նրա ներքին ու արտաքին քաղաքականության գիտական հիմքը ստեղծագործաբար կիրառվող և զարգացվող մարքս-լենինյան ուսմունքն է: Մեծ է Ձեր, Լեոնիդ Իլյիչ, անձնական ներդրումը կուսակցության կողմից մարքս-լենինյան գիտության հետագա ստեղծագործական զարգացման բնագավառում, հատկապես զարգացած սոցիալիզմի կառուցման և կոմունիզմին անցնելու պայմանների համեմատ, Ձեր ներդրումը երկրի տնտեսական և սոցիալական զարգացման արմատական պրոբլեմների խոր մշակման գործում: Սոցիալիստական ինդուստրիայի զարգացման, գյուղատնտեսությունն ըստ ամենայնի զարգացնելու նպատակին ուղղված ագրարային քաղաքականության, հանրային արտադրության արդյունավետության բարձրացման, սոցիալիստական կարգերի առավելությունների հետ գիտատեխնիկական հեղաշրջման նվաճումների զուգորդման, հասարակական հարաբերությունների կատարելագործման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության հարցերի, միջազգային հարաբերությունների պրոբլեմների և ՍՄԿԿ-ի ու սովետական պետության արտաքին քաղաքական գործունեության խնդիրների վերաբերյալ Ձեր առաջ քաշած դրույթները հիմնարար նշանակություն ունեն մեր հայրենիքի զարգացման արդի փուլում:

Թանկագին Լեոնիդ Իլի՛չ:

Դուք կոմունիստների և բոլոր սովետական մարդկանց խոր հարգանքը, սերն ու վստահությունն եք նվաճել, Ձեր բոլոր ուժերը նվիրաբերելով կուսակցությանն ու ժողովրդին անձնվիրաբար ծառայելուն: Դուք պատվով եք կատարում կուսակցության կողմից Ձեր վրա դրված առաքելությունը, գլխավորելով նրա մարտական շտաբը՝ Կենտրոնական կոմիտեն: Կուսակցությունը և ժողովուրդը գիտեն, թե Դուք ինչպիսի, հիրավի, անսպառ եռանդով, սկզբունքայնությամբ և հեռատեսությամբ եք իրականացնում կոմունիստական շինարարության բարդ ու պատասխանատու խնդիրների լուծման ղեկավարումը:

Դուք մշտական հոգատարություն եք ցուցաբերում մեր հասարակության մեջ կոմունիստական կուսակցության ղեկավար դերի հետագա բարձրացման, ժողովրդական մասսաների հետ նրա կապերի ամրապնդման, կուսակցության և հասարակության կյանքում լենինյան սկզբունքների և նորմաների հաս-



տատման ու զարգացման նկատմամբ, որոնք մեր հաջողությունների պայմանն են:

Թանկագին բարեկամ և ընկե՛ր:

Ձեր բոլոր ընկերներին, կոմունիզմի գործի բոլոր մարտիկներին Դուք Ձեր օրինակով ցույց եք տալիս, թե ինչպիսին պետք է լինի կոմունիստ-լենինյանը: Ձեր ողջ գործունեությունը տոգորված է կուսակցության և ժողովրդի ստեղծագործական ուժերի նկատմամբ խորին հավատով, աշխատավոր մարդկանց նկատմամբ սրտագին մոտիկությամբ ու հարգանքով: Դուք աչքի եք ընկնում մարդկանց ոգևորելու և համախմբելու, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի համերաշխ, համախմբված աշխատանքը կազմակերպելու հրաշալի կարողությամբ:

Մեր կոմունիստական կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն, Կենտկոմի քաղբյուրոն և անձամբ Դուք, Լեոնիդ Իլյիչ, հասել եք սովետական հասարակության մեջ իսկական կոլեկտիվիզմի, ընկերական վստահության, հարգանքի և դրա հետ մեկտեղ պահանջկոտության ու սկզբունքայնության մթնոլորտի հաստատման և զարգացման, որը նպաստում է կոմունիզմ կառուցող մարդու բոլոր ստեղծագործական ուժերի ծաղկմանը: Սովետական մարդիկ կուսակցությանը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին, Ձեզ, Լեոնիդ Իլյիչ, պատասխանում են խոր ու սրտաբուխ շնորհակալության զգացմունքներով:

Արտահայտելով այդ զգացմունքներն ու ջերմորեն շնորհավորելով Ձեզ, թանկագին Լեոնիդ Իլյիչ, Ձեր 70-ամյակի օրվա առթիվ, Ձեզ ի սրտե մաղթում ենք քաջառողջություն ու երջանկություն, նոր հաջողություններ Ձեր անդուլ ու բազմաբեղուն գործունեության մեջ՝ ի բարօրություն սովետական ժողովրդի, բոլոր աշխատավորների, հանուն խաղաղության և կոմունիզմի պայծառ գաղափարների հաղթանակի:

**ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ**

**ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ**

**ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏ**

# ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԻՆ

Թանկագին Լեոնիդ Իլյի՛չ:

Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեն, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը և Մինիստրների սովետը, արտահայտելով հանրապետության աշխատավորների, ամբողջ հայ ժողովրդի սիրո ու խորին հարգանքի զգացմունքները, ի սրտե շնորհավորում են Ձեզ՝ կուսակցության և սովետական ժողովրդի ականավոր ու ճանաչված ղեկավարիդ, ծննդյան յոթանասունամյակի առթիվ:

Ձեր կյանքի ուղին, աշխատավորների երջանկության համար անձնվեր ու անխոնջ գործունեությունը կոմունիստական կուսակցության գործին, անմահ Լենինի գործին անձնվիրաբար ծառայելու վառ ու ոգեշնչող օրինակ է բոլոր սովետական մարդկանց համար:

Ահա արդեն երկրորդ տասնամյակն է, ինչ կուսակցության ղեկի մոտ կանգնած, Դուք անգնահատելի ավանդ եք մուծում կոմունիստական շինարարության տեսության ու պրակտիկայի մեջ, սովետական երկրի ժողովուրդների բարեկամության հետագա ամրապնդման, սոցիալիստական համագործակցության երկրների հզորության ու միջազգային ազդեցության մեծացման, համաշխարհային կոմունիստական շարժման համախմբման, կայուն խաղաղության և ժողովուրդների անվտանգության պայքարի գործում:

Անցած տարիները կոմունիստական կուսակցության և սովետական պետության պատմության մեջ կմտնեն որպես սովետական ժողովրդի նոր մեծագործությունների ժամանակաշրջան:

Սովետական Հայաստանի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը և մտավորականությունը, ինչպես ամբողջ սովետական ժողովուրդը, միահամուռ պաշտպանում և հավանություն են տալիս ՍՄԿԿ-ի ներքին և արտաքին քաղաքականությանը, անկեղծ շնորհակալություն են հայտնում կուսակցության լենինյան Կենտրոնական կոմիտեին, Կենտկոմի քաղբյուրոյին, Ձեզ, թանկագին Լեոնիդ Իլյիչ, Սովետական Միության բոլոր միութենական հանրապետությունների էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացմանն ուղղված նպատակասլաց գործունեության համար, ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումների հաջող կենսագործման համար:

Հանրապետության կուսակցական կազմակերպությունը և բոլոր աշխատավորները Ձեզ, թանկագին Լեոնիդ Իլյիչ, ճանաչում են որպես հավատարիմ ու տոկուն լենինյանի, հետևողական ինտերնացիոնալիստի և խաղաղության ջատագովի: Ժողովրդի բարօրության նկատմամբ Ձեր մշտական հոգատարությամբ, քաղաքական իմաստնությամբ ու կազմակերպչական ակնառու տաղանդով, կոմունիստական համոզվածությամբ ու կրքոտ հաստատակամությամբ, մարդկանց նկատմամբ օբյեկտիվ պահանջկոտությամբ ու սրտագին ուշադրությամբ Դուք, թանկագին Լեոնիդ Իլյիչ, վաստակել եք ամբողջ կուսակցության, ամբողջ սովետական ժողովրդի ջերմ սերն ու խորին հարգանքը:

Ձեր պանծալի յոթանասնամյակի օրը Սովետական Հայաստանի կոմունիստները, ժողովուրդը Ձեզ, թանկագին Լեոնիդ Իլյիչ, մաղթում են քաջառողջություն, հետագա երկար ու երկար տարիների բեղմնավոր գործունեություն՝ ի բարօրություն մեր մեծ սոցիալիստական հայրենիքի, հուրախություն և ի երջանկություն աշխատավոր մարդկանց:

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵ**

**ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆ**

**ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏ**

## ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

## Հ Ր Ա Մ Ա Ն Ա Գ Ի Ր Ը

### ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԵՐՈՍ, ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՀԵՐՈՍ ԸՆԿԵՐ ԼԵՈՆԻԴ ԻԼՅԻՉ ԲՐԵԺՆԵՎԻՆ ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆՈՎ ԵՎ «ՈՍԿԵ ԱՍՏՂ» ԵՐԿՐՈՐԴ ՄԵԴԱԼՈՎ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Կոմունիստական շինարարության գործում կոմունիստական կուսակցությանն ու սովետական պետությանը մատուցած ակնառու ծառայությունների, ժողովուրդների խաղաղության և անվտանգության ամրապնդման ասպարեզում ակտիվ, բեղմնավոր գործունեության համար, Հայրենական մեծ պատերազմում գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ տարած հաղթանակի գործում, Սովետական Միության տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդման ասպարեզում ներդրած անձնական մեծ ավանդի համար և ծննդյան յոթանասնամյակի կապակցությամբ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, Սովետական Միության հերոս, սոցիալիստական աշխատանքի հերոս ընկեր Լեոնիդ Իլյիչ **ԲՐԵԺՆԵՎԻՆ** պարգևատրել **ԼԵՆԻՆԻ ՇՔԱՆՇԱՆՈՎ** և **ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԵՐՈՍԻ «ՈՍԿԵ ԱՍՏՂ» ԵՐԿՐՈՐԴ ՄԵԴԱԼՈՎ**:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ՝ Ն. ՊՈԴԳՈՐՆԻ

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝ Մ. ԳԵՈՐԳԱՁԵ

*Մոսկվա, Կրեմլ, 18 դեկտեմբերի 1976 թ.*

## ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ

## Հ Ր Ա Մ Ա Ն Ա Գ Ի Ր Ը

### ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ, ՍՍՀՄ ՊԱՇՏՊԱՆՈՒԹՅԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԱՐՇԱԼ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻՆ ՍՍՀՄ ՊԵՏԱԿԱՆ ԳԵՐԲԻ ՈՍԿԵԴՐՈՇՄ ՊԱՏԿԵՐՈՎ ՊԱՏՎԱՎՈՐ ԶԵՆՔՈՎ ՊԱՐԳԵՎԱՏՐԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Երկրի պաշտպանունակության ամրապնդման և ՍՍՀՄ զինված ուժերի կատարելագործման ասպարեզում ունեցած ակնառու ծառայությունների համար ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ պաշտպանության խորհրդի նախագահ, Սովետական Միության մարշալ Լեոնիդ Իլյիչ **ԲՐԵԺՆԵՎԻՆ** պարգևատրել **ՍՍՀՄ ՊԵՏԱԿԱՆ ԳԵՐԲԻ ՈՍԿԵԴՐՈՇՄ ՊԱՏԿԵՐՈՎ ՊԱՏՎԱՎՈՐ ԶԵՆՔՈՎ**:

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ՝ Ն. ՊՈԴԳՈՐՆԻ

ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության քարտուղար՝ Մ. ԳԵՈՐԳԱՁԵ

*Մոսկվա, Կրեմլ, 18 դեկտեմբերի 1976 թ.*

## ՍՄԿԿ Կենտկոմում, ՍՍՀՄ Մինիստրների սովետում, ՀԱՄԿԽ-ում և ՀամԼԿԵՄ Կենտկոմում

# ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՈՐԱԿԸ ԲԱՐՁՐԱՑՆԵԼՈՒ, ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԱՌԱՋԱԴՐԱՆՔՆԵՐԸ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՄԲ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

ՍՄԿԿ Կենտկոմը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը գոհունակությամբ նշում են, որ կուսակցության XXV համագումարի որոշումները առաջ են բերել բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, մտավորականության, ամբողջ սովետական ժողովրդի աշխատանքային ակտիվության նոր վերելք:

Տնտեսական և սոցիալական առաջադիմության հզոր լծակ, աշխատավորների քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության դպրոց է սոցիալիստական մրցությունը, որը հիրավի համաժողովրդական բնույթ է ստացել, հասել է՛ ավելի բարձր աստիճանի: Այն մշտապես հարստանում է նոր փորձով, արժեքավոր հայրենասիրական նախաձեռնություններով: Կատարելագործվում են մրցության կազմակերպման ձևերն ու մեթոդները, ուժեղանում է մրցողների ուշադրությունը աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման նկատմամբ, ընդլայնվում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը:

Աշխատավորները որպես գործողությունների կոնկրետ ծրագիր ընդունեցին ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թվականի հոկտեմբերյան պլենումի որոշումները, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառում շարադրված դրույթներն ու հետևությունները: Արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի աշխատողները ակտիվորեն ներգրավվել են տասներորդ հնգամյակի՝ արդյունավետության և որակի հնգամյակի, կատարման համար ծավալված պայքարի մեջ:

Ի նշանավորումն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակի, Մոսկվայի, Լենինգրադի և ուրիշ քաղաքների առաջավոր բանվորներն ու կոլեկտիվները ստանձնում են բարձր սոցիալիստական պարտավորություններ, ընդունում հանդիպական պլաններ, որոնց նպա-



տակն է ավելի լրիվ օգտագործել արտադրության ռեզերվները, գիտության ու տեխնիկայի, առաջավոր փորձի նվաճումները: Պլանային առաջադրանքները գերակատարելու նախաձեռնությամբ հանդես են եկել Արևմտյան Սիբիրի նավթագործները, Օրենբուրգի մարզի գազագործները, Մագնիտկայի մետալուրգները, Դոնեցկի ածխահատները: Իվանովոյի և Մոսկվայի մարզերի առաջավոր տեքստիլագործուհիները պարտավորվել են հասնել աշխատանքի առավելագույն արտադրողականության: Սվերդլովսկի մարզի ձեռնարկություններում տարածվում է յուրաքանչյուր աշխատավորի, յուրաքանչյուր կոլեկտիվի աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման շարժումը: Շինարարական կազմակերպությունների առաջավոր կոլեկտիվները կոչ են արել հաջողությամբ կատարել կարողությունների և օբյեկտների գործարկման առաջադրանքները, կրճատել շինարարության ժամկետներն ու արժեքը, բարձրացնել նրա որակը: Հանրապետություններում, երկրամասերում և մարզերում լայն պաշտպանություն է գտնում հացահատիկի արտադրությունն ավելացնելու և պետությանը դրա վաճառքի պլանները գերակատարելու Կուբանի հողագործների նախաձեռնությունը, կաթի, մսի և մյուս մթերքների արտադրությունն ըստ ամենայնի ավելացնելու Կիևի և Տուլայի մարզերի անասնապահների նախաձեռնությունը:

Բարձր գնահատելով աշխատավորների հայրենասիրական նախաձեռնությունները և կարևոր նշանակություն տալով սոցիալիստական մրցության հետագա զարգացմանը, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, արհեստակցական միությունների համամիութենական կենտրոնական խորհուրդը և ՀամԼԿԵՄ Կենտրոնական կոմիտեն որոշում են.

1. կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին, մինիստրություններին ու գերատեսչություններին, ձեռնարկությունների, միավորումների, կառույցների, կոլտնտեսությունների և սովխոզների ղեկավարներին հանձնարարել կազմակերպչական և գաղափարա-քաղաքական աշխատանքը նպատակամղել ՍՄԿԿ XXV համագումարի նախատեսած սոցիալ-տնտեսական խնդիրների հաջող կենսագործման համար սոցիալիստական մրցության ըստ ամենայնի ծավալմանը, տասներորդ հնգամյակի ժողովրդատնտեսական պլանի առաջադրանքների կատարմանն ու գերակատարմանը՝ «Աշխատել ավելի լավ, բարձրացնել արդյունավետությունն ու որակը» լոզունգով:

1977 թվականին լայնորեն ծավալել Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը արժանավայել դիմավորելու սոցիալիստական մրցությունը, նրա մեջ ներգրավել բոլոր բանվորներին, կոլտնտեսականներին, մասնագետներին՝ նպատակ ունենալով հոբելյանական տարում զգալիորեն գերակատարել պլանային առաջադրանքները, հուսալի երաշխիք ստեղծել ամբողջ հնգամյակի հաջող կատարման համար: Հավանություն տալ առաջավոր բանվորների և կոլեկտիվների նախաձեռնությանը, որոնք պարտավորություններ են ստանձնել հնգամյակի երկու տարվա առաջադրանքները կատարել մինչև 1977 թվականի նոյեմբերի 7-ը:

Հատուկ ուշադրություն դարձնել հանդիպական պլաններ ստանձնելուն և իրականացնելուն: Այդ աշխատանքը կատարելիս ելնել այն բանից, որ հանդիպական պլանները ներքին ռեզերվները ի հայտ բերելուն և առավել լրիվ օգտագործելուն աշխատավորական կոլեկտիվների և յուրաքանչյուր աշխատողի ակտիվ մասնակցության կարևոր ձև են, արտահայտում են նրանց ձգտումը՝ ի շահ հասարակության կոնկրետ ավանդ մուծել՝ առաջադրված նպատակներին հասնելու ավելի արագ, քան նախատեսված է և ռեսուրսների բոլոր տեսակների պակաս ծախսումներով:

Կատարելագործել հումք, նյութեր, կոմպլեկտավորող առարկաներ մատակարարող ձեռնարկությունների կոլեկտիվների և պատրաստի արտադրանք թողարկող գործարանների ու ֆաբրիկաների կոլեկտիվների, ինչպես

նաև հարակից բրիգադների, տեղամասերի, արտադրամասերի կոլեկտիվնե-րի մրցության կազմակերպումը:

Հասնել սոցիալիստական մրցության մեծ ներգործության, օգտագործել նրա հսկայական հնարավորությունները սովետական պետության տնտե-սական հզորության հետագա ամրապնդման, ժողովրդի բարեկեցության անշեղ բարձրացման, աշխատավորների կոմունիստական դաստիարակու-թյան բարելավման, սոցիալիստական ապրելակերպի զարգացման նպատա-կով:

2. Մրցողների գլխավոր ուշադրությունը կենտրոնացնել հետևյալ խնդ-իրների լուծման վրա.

էապես բարձրացնել արտադրության արդյունավետությունն ու աշխա-տանքի որակը՝ անպայման կատարելով ու գերակատարելով ամսական, եռամսյակային, տարեկան պլաններն ու առաջադրանքները և ամբողջու-թյամբ վերցրած հնգամյակը.

բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը՝ արտադրության կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման տեմպերն արագացնելու, աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևեր արմատավորելու, կադրերի պատրաստումը կատարելագործելու և նրանց որակավորումը բարձրացնելու, աշխատանքային և արտադրական կարգապահությունը ամրապնդելու միջ-ցով.

բարելավել հիմնական արտադրական ֆոնդերի օգտագործումը՝ ար-տադրական պրոցեսները ինտենսիվացնելու, մեքենաների, սարքավորում-ների աշխատանքի հերթափոխայնության գործակիցը մեծացնելու և դրանց պարապուրդները վերացնելու, նոր գործարկված կարողությունների յուրա-ցումն արագացնելու միջոցով.

խստիվ պահպանել խնայողության, նյութական ռեսուրսների ռացիոնալ օգտագործման ռեժիմը՝ առաջադիմական կոնստրուկտորական լուծումները լայնորեն կիրառելու, տեխնոլոգիան կատարելագործելու,՝ հումքի և նյու-թերի տեսակարար ծախսումները նվազեցնելու, դրանք է՛լ ավելի խոր ու կոմպլեքսային վերամշակման ենթարկելու, երկրորդային ռեսուրսների օգ-տագործումն ընդլայնելու հիման վրա.

ապահովել արտադրանքի բոլոր տեսակների բարձր որակը, ավե-լացնել որակի բարձրագույն կատեգորիա ունեցող արտադրանքի թողարկու-մը և մեծացնել դրա տեսակարար կշիռը արտադրության ընդհանուր ծավալի մեջ.

արագացնել գիտատեխնիկական առաջադիմության տեմպերը, բարձ-րացնել գիտական հետազոտությունների արդյունավետությունը, ստեղծել իրենց տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով հայրենական և համաշխար-հային լավագույն նվաճումները գերազանցող նոր արտադրատեսակներ, ժողովրդական տնտեսության մեջ լայնորեն ներդնել գիտական մշակումները, է՛լ ավելի զարգացնել ռացիոնալիզատորների և գյուտարարների շարժումը.

ժամանակին գործարկել ավարտված օբյեկտներն ու գործարկվելիք կոմպլեքսները, արագացնել գործող ձեռնարկությունների վերակառուցումն ու տեխնիկական վերազինումը, նվազեցնել թերավարտ շինարարության ծավալները, շինմոնտաժային աշխատանքների կատարման ժամկետներն ու դրանց արժեքը.

անխափան բավարարել ժողովրդական տնտեսության հումքի, վառե-լիքի, էներգիայի և մետաղի աճող պահանջմունքները.

արտադրել և մատակարարել սահմանված անվանացանկի ու տեսակա-նու արտադրանք՝ պատվերներին և կնքված պայմանագրերին համապա-տասխան.

ավելացնել հացահատիկի, մսի, կաթի և հողագործական ու անասնա-պահական մյուս մթերքների արտադրությունը և դրանց վաճառքը պետու-թյանը, բարելավել դրանց որակը, բարձրացնել գյուղատնտեսական ար-տադրության արդյունավետությունը, հասնել յուրաքանչյուր հեկտարի, ներ-



դրումների յուրաքանչյուր ռուբլու, պարարտանյութերի յուրաքանչյուր տոն-նայի առավելագույն փոխհատուցման.

ըստ ամենայնի ավելացնել ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը, ընդլայնել և նորացնել դրանց տեսականին, ավելացնել ժամանակակից պահանջներին համապատասխանող նոր արտադրատե-սակների թողարկումը.

ավելի լրիվ ու ժամանակին բավարարել ժողովրդական տնտեսության և բնակչության պահանջմունքները տրանսպորտի և կապի բոլոր տեսակ-ների բնագավառում, արագացնել բեռների առաքումը, կրճատել ծախքերը և ոչ ռացիոնալ փոխադրումները, բարելավել տրանսպորտային միջոցների օգտագործումը.

բարձրացնել ոչ արտադրական ոլորտի բոլոր ճյուղերի աշխատող-ների աշխատանքի արդյունավետությունն ու կուլտուրան, ընդլայնել սպա-սարկումների ծավալներն ու տեսակները, արմատավորել բնակչության սպասարկման առաջավոր ձևերը:

3. Կազմակերպել համամիութենական սոցիալիստական մրցություն՝ ամփոփելով նրա արդյունքները ըստ տասներորդ հնգամյակի յուրաքանչյուր տարվա և ըստ ամբողջ հնգամյակի.

առաջատար մասնագիտությունների աշխատողների՝ հաղթողներին հանձնելով միությունների (գերատեսչությունների) ու արհմիություն-ների կենտկոմների պատվո դիպլոմներ և հուշանվերներ կամ դրամական մրցանակներ.

բրիգադների, տեղամասերի, օղակների, բաժանմունքների, ֆերմաների կոլեկտիվների՝ հաղթողներին հանձնելով միությունների (գերատես-չությունների) ու արհմիությունների կենտկոմների պատվո վիմպելներ և հու-շանվերներ կամ դրամական մրցանակներ.

կոմերիտական-երիտասարդական բրիգադների՝ հաղթողներին հանձնե-լով «Հնգամյակների հերոսները, աշխատանքի վետերանները՝ լավագույն կոմերիտական-երիտասարդական կոլեկտիվին» փոխանցիկ կարմիր դրոշ-ներ՝ դիպլոմներով և դրամական մրցանակներ.

արդյունաբերական, արտադրական, գիտա-արտադրական, միջտնտե-սային, ագրոարդյունաբերական և այլ միավորումների, դրանց արտադրա-կան միավորների, ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսու-թյունների, սովխոզների, գիտահետազոտական, նախագծային, կոնստրուկ-տորական և այլ կազմակերպությունների ու հիմնարկների, բարձրագույն ուսումնական հաստատությունների կոլեկտիվների՝ հաղթողներին հանձնե-լով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներ՝ դիպլոմներով և դրամական մրցա-նակներ, ինչպես նաև համապատասխան մինիստրությունների (գերատես-չությունների) և արհմիությունների կենտկոմների փոխանցիկ կարմիր դրոշ-ներ և դրամական մրցանակներ: Տարվա արդյունքների հիման վրա ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկո-մի փոխանցիկ կարմիր դրոշներով պարգևատրված և լարված հանդիպա-կան պլանների ու բարձր սոցիալիստական պարտավորությունների կա-տարման գործում առավել բարձր ու կայուն ցուցանիշներ ձեռք բերած կո-լեկտիվները գրանցվում են ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի համամիութենական պատվո տախտակին, 1977 թվականի արդյունքների հիման վրա փոխանցիկ դրոշնե-րով պարգևատրելիս և պատվո տախտակին գրանցելիս հաշվի են առնվում նաև Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը ար-ժանավայել դիմավորելու մրցության մեջ ձեռք բերված արդյունքները.

քաղաքների, ազգային օկրուգների, քաղաքային և գյուղական շրջան-ների՝ հաղթողներին հանձնելով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սո-վետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներ՝ դիպ-լոմներով և դրամական մրցանակներ.

միութենական և ինքնավար հանրապետությունների, երկրամասերի և մարզերի՝ հաղթողներին հանձնելով ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշներ՝ դիպլոմներով:

4. Հիմնել «Տասներորդ հնգամյակում աշխատանքի բարձր արդյունավետության և որակի համար» ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի հուշանշան՝ կոլեկտիվներին, ձեռնարկություններին, միավորումներին, կառույցներին, կոլտնտեսություններին, սովխոզներին, գիտահետազոտական և այլ կազմակերպություններին ու հիմնարկներին, բարձրագույն ուսումնական հաստատություններին պարգևատրելու համար:

Հուշանշանով պարգևատրել տասներորդ հնգամյա պլանի առաջադրանքների կատարման գործում առավել բարձր որակական ցուցանիշների հասած կոլեկտիվներին, որոնք համամիութենական սոցիալիստական մրցության տարեկան արդյունքներով բազմիցս արժանացել են ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշների:

Բանվորներին, կոլտնտեսականներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին և ծառայողներին պարգևատրելու համար սահմանել.

«Սոցիալիստական մրցության հաղթող» միասնական ընդհանուր միութենական կրծքանշան՝ հնգամյակի համապատասխան տարվա առաջադրանքները և սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար.

«Տասներորդ հնգամյակի հարվածային» միասնական ընդհանուր միութենական կրծքանշան՝ հուշանվերով՝ աշխատանքի արդյունավետության ու որակի բարձրացման բարձր ցուցանիշների հասնելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար:

5. Մինչև 15-ի հասցնել ՍՍՀՄ այն պետական մրցանակների թիվը, որոնք աշխատանքում ձեռք բերված ակնառու նվաճումների համար շնորհվում են սոցիալիստական մրցության առաջավոր բանվորներին, կոլտնտեսականներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին, մարզկոմներին, մինիստրություններին ու գերատեսչություններին, միութենական ու ինքնավար հանրապետությունների մինիստրների սովետներին, երկրգործկոմներին ու մարզգործկոմներին թույլատրել արհմիութենական ու կոմերիտական մարմինների հետ համատեղ ՍՍՀՄ շքանշաններով ու մեդալներով պարգևատրման ներկայացնել.

սոցիալիստական մրցության մեջ աչքի ընկնող արդյունքների հասած աշխատանքի առաջավորներին՝ տասներորդ հնգամյա պլանի առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար.

ձեռնարկությունները, միավորումները, կոլտնտեսությունները, սովխոզները, կառույցները, գիտահետազոտական և մյուս կազմակերպությունները՝ արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացման գործում հատկապես խոշոր նվաճումների հասնելու, պլանային առաջադրանքները և սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար:

Ընդունել՝

ՀԱՄԿԽ-ի առաջարկությունը՝ ամեն տարի Սովետական Միության և արտասահմանյան երկրների 120 հազար արտոնյալ տուրիստական ուղեգրեր հատկացնել համամիութենական սոցիալիստական մրցության մեջ հաղթած արտադրության առաջավորներին խրախուսելու համար.

ՀամԼԿԵՄ Կենտկոմի առաջարկությունը՝ ամեն տարի լենինյան կոմերիտմիության մրցանակներ շնորհել կոմերիտական-երիտասարդական այն



կոլեկտիվներին և արտադրության երիտասարդ աշխատողներին, որոնք առավել բարձր արդյունքների են հասել սոցիալիստական մրցության մեջ. արտադրության առաջավորներին պարգևատրել «Հնգամյակի երիտասարդ գվարդիական» կրծքանշանով և ամեն տարի սոցիալիստական մրցության հաղթողներին հատկացնել 30 հազար արտոնյալ տուրիստական ուղեգրեր սովետական ժողովրդի հեղափոխական, մարտական ու աշխատանքային փառքի վայրեր և եղբայրական սոցիալիստական երկրներ ուղևորվելու համար:

6. Կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, սովետական ու տնտեսական մարմինները պետք է ակտիվորեն զարգացնեն աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը, բարձրացնեն պահանջկոտությունը կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի և հարվածայինի պատվավոր կոչում շնորհելու և հաստատելու նկատմամբ:

Կոմունիստական աշխատանքի հարվածայիններն ու կոլեկտիվները պետք է օրինակ ծառայեն, արտադրության առավելագույն արդյունավետության հասնելու և աշխատանքի որակը բարելավելու պայքարում, պրոֆեսիոնալ վարպետությունը, քաղաքական, հանրակրթական ու կուլտուրական մակարդակը բարձրացնելու, կոմունիստական բարոյականության նորմաները, սոցիալիստական համակեցության կանոնները պահպանելու գործում:

7. Մինիստրությունները, գերատեսչությունները, արհմիությունների կենտկոմները, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, ձեռնարկությունների, միավորումների, կոլտնտեսությունների ու սովխոզների, կառույցների ղեկավարները պետք է ապահովեն, որ արտադրամասերը, տեղամասերը, բրիգադները, ֆերմաները, բանվորներն ու կոլտնտեսականները իրազեկ դարձվեն հնգամյակի առանձին տարիների և ամբողջ հնգամյակի պլանային առաջադրանքներին: Հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոլեկտիվ, բոլոր աշխատավորները հստակ պատկերացնեն նոր բնագծերը և այն խնդիրները, որ պետք է լուծվեն:

Բարելավել սոցիալիստական պարտավորությունների տնտեսական հիմնավորումը: Համակողմանիորեն զարգացնել աշխատանքի արտադրողականության և աշխատանքի որակի բարձրացման անհատական ու կոլեկտիվ կոմպլեքսային պլանների մշակման և կատարման շարժումը: Կատարելագործել ինժեներատեխնիկական ու գիտական աշխատողների, մասնագետների մրցությունը ստեղծագործական պլանների, համագործակցության պայմանագրերի հիման վրա, բարձրացնել նրանց դերը բանվորների, կոլտնտեսականների, ծառայողների մրցության կազմակերպման գործում:

Մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է բարձրացնեն տնտեսական ղեկավարների պատասխանատվությունը հանդիպական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները հաջող կատարելու կազմակերպական տեխնիկական ու տնտեսական անհրաժեշտ պայմանների ստեղծման համար:

8. Մինիստրությունները, գերատեսչությունները, արհմիությունների կենտրոնական ու հանրապետական կոմիտեները, ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարները պետք է ապահովեն առաջավոր փորձի պլանաչափ լայն տարածումը: Այս աշխատանքը համարել սոցիալիստական մրցության կազմակերպման կարևորագույն խնդիր:

ՍՍՀՄ ԺՏՆՑ-ն պետք է մինիստրությունների ու գերատեսչությունների հետ համատեղ կազմակերպի առավել մասսայական պրոֆեսիաների և աշխատանքային կոլեկտիվների լավագույն աշխատողների առաջավոր փորձի ուսումնասիրման ու տարածման համամիութենական դպրոց, փորձ, որը ժողովրդատնտեսական կարևոր նշանակություն ունի: ՍՍՀՄ Մինիստրների սովետի հեռուստատեսության ու ռադիոհաղորդումների պետական

կոմիտեի հետ համատեղ կազմակերպել այդ փորձի լայն լուսաբանումը
կենտրոնական ու տեղական հեռուստատեսությամբ և ռադիոյով:

ՍՍՀՄ Մինիստրների սովետի կինեմատոգրաֆիայի պետական կոմի-
տեն պետք է մինիստրությունների ու գերատեսչությունների հետ համատեղ
ապահովի աշխատանքի ու արտադրության կազմակերպման առաջավոր
փորձը բացահայտող կինոֆիլմերի ստեղծումը և լայն ցուցադրումը:

9. Մինիստրությունները, գերատեսչությունները, արհմիությունների
կենտկոմները, կուսակցական, սովետական, արհմիութենական կոմերիտա-
կան կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները պետք է բարե-
լավեն սոցիալիստական մրցության արդյունքների ամփոփման պրակտի-
կան: Մրցության հաղթողներին որոշելու հետ մեկտեղ տալ միջին ցուցա-
նիշներ ունեցող, ինչպես նաև ետ մնացող կոլեկտիվների և աշխատողնե-
րի գործունեության գնահատականը, ձեռնարկել և իրականացնել աշխա-
տանքին խանգարող պատճառները վերացնելու միջոցներ:

Միջոցներ ձեռնարկել մրցության մասնակիցների բարոյական ու նյու-
թական խթանումը է՛լ ավելի կատարելագործելու ուղղությամբ, այն առավել
սերտորեն շաղկապել վերջնական արդյունքների, արտադրության արդյու-
նավետության ցուցանիշների, աշխատանքի բարձր որակի հետ: Ավելի լրիվ օգ-
տագործել նյութական խրախուսման ֆոնդը և պարգևավարձի գործող սիս-
տեմը՝ սոցիալիստական մրցության հաղթողներին քաջալերելու համար,
կիրառել առաջավորներին խրախուսելու այլ ձևեր:

10. Կենտրոնական ու տեղական թերթերի, հանդեսների, ռադիոյի ու
հեռուստատեսության խմբագրությունները պետք է խորապես լուսաբանեն
սոցիալիստական մրցության պրակտիկան, լայնորեն ցույց տան առաջավոր
կոլեկտիվների, արտադրության նորարարների, կոմունիստական աշխատան-
քի հարվածայինների աշխատանքի փորձը:

Կենտրոնական ու տեղական թերթերում այսուհետ ևս հատուկ էջեր
նվիրել սոցիալիստական մրցության ընթացքի և արդյունքների լուսաբան-
մանը: Պարբերաբար հաղորդել ռադիո-հեռուստատեսային «սոցիալիստա-
կան մրցության օրագիր» ծրագրեր:

ՍՍՀՄ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի
ու գրքի առևտրի գործերի պետական կոմիտեն, պետքաղհրատը, արհհրա-
տը, «Պլակատ» և «Երիտասարդ գվարդիա» հրատարակչությունները, ՍՍՀՄ
Մինիստրների սովետի հեռուստատեսության ու ռադիոհաղորդումների պե-
տական կոմիտեն, ՍՍՀՄ մինիստրների սովետի կինեմատոգրաֆիայի պե-
տական կոմիտեն պետք է նախատեսեն այնպիսի գրականության, վավերա-
գրական ու գեղարվեստական ֆիլմերի, ցուցադրական ագիտացիայի մի-
ջոցների թողարկում, որոնք խորապես բացահայտեն սոցիալիստական
մրցության նպատակները, բովանդակությունն ու առանձնահատկությունները
արդի փուլում, առաջավորների փորձը սոցիալ-տնտեսական կարևորագույն
խնդիրների լուծման գործում:

Տնտեսագիտական կրթության սիստեմը ակտիվորեն օգտագործել մըր-
ցողներին օգնություն ցույց տալու յուրաքանչյուր աշխատատեղում ռեզերվ-
ների հայտնաբերման և հանդիպական պլանների տնտեսագիտական հիմ-
նավորման, առաջավոր փորձի, գիտության ու տեխնիկայի նվաճումների
տիրապետման ասպարեզում:

11. ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան, ՀԱՄԿԽ-ն, ՍՍՀՄ Մինիստրը-
ների սովետի աշխատանքի և սոցիալական հարցերի պետական կոմիտեն,
ՍՍՀՄ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթության մինիս-
տրությունը, մյուս մինիստրություններն ու գերատեսչությունները պետք է
միջոցներ ձեռնարկեն սոցիալիստական մրցության տեսության հետագա
մշակման ու պրակտիկայի ընդհանրացման ուղղությամբ, հատուկ ուշադրու-
թյուն դարձնելով մրցության ներգործունության, աշխատանքի նկատմամբ կո-
մունիստական վերաբերմունքի շարժման արդյունավետության բարձրացմա-
նը նվիրված հետազոտությունների ու հանձնարարականների որակին:



12. Մինիստրությունները, գերատեսչությունները և արհմիությունների
կենտկոմները պետք է վերանայեն ճյուղերում համամիութենական սոցիալիս-
տական մրցության պայմանները, հաշվի առնելով տնտեսական ու սոցիալա-
կան քաղաքականության՝ կուսակցության XXV համագումարի սահմանած
հիմնական ուղղությունները, ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թվականի հոկտեմբեր-
յան պլենումի որոշումներից բխող խնդիրները, ՍՍՀՄ ժողովրդական տըն-
տեսության զարգացման 1976—1980 թվականների պետական հնգամյա
պլանով նախատեսված կոնկրետ խնդիրները և դրանք հաստատել՝ համա-
ձայնեցնելով ՀԱՄԿԽ-ի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի աշխատանքի ու սո-
ցիալական հարցերի պետական կոմիտեի հետ:

***

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Մինիստրների սովետը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտկոմը հաստատ վստահություն են հայտնում, որ բանվորներն ու կոլտնտեսականները, ինժեներա-տեխնիկական ու գիտական աշխատողները, արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության, տրանսպորտի և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի բոլոր աշխատավորները է՛լ ավելի լայնորեն կծավալեն սոցիալիստական մրցությունը՝ ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները կենսագործելու, տասներորդ հնգամյակի առաջադրանքները հաջողությամբ կատարելու ու գերակատարելու համար, աշխատանքային նոր հաջողություններով կդիմավորեն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակը, արժանի ավանդ կներդնեն մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման գործում:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԿԱՏԱՐԵԼԱՊԵՍ ՏԻՐԱՊԵՏԵԼ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՃԻՆ

**Վ. ՇՉԵՐԲԻՑԿԻ**
**ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, Ուկրաինայի կոմկուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար**

ԱՎԱՐՏՎԵՑ ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ առաջին՝ հիրավի պատմական իրադարձություններով ու աչքի ընկնող մեծագործություններով լի տարին։ Կոմունիստական կուսակցության փորձված ղեկավարությամբ սովետական ժողովուրդը հաջողությամբ կենսագործում է նրա XXV համագումարի որոշումները։ Դա մեկ անգամ ևս համոզիչ կերպով հաստատում է ՍՄԿԿ-ի լենինյան գլխավոր կուրսի ճշտությունը, ստեղծարար հզոր ուժը։

Հատկապես XXV համագումարից հետո մեր կուսակցության և ժողովրդի կյանքում քննարկված հարցերի նշանակությամբ ու մասշտաբայնությամբ առանձնահատուկ տեղ գրավեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումը։ Նրա որոշումներում հետագա զարգացում ու կոնկրետացում ստացան XXV համագումարի ստրատեգիական ու տակտիկական դրույթները, ձևակերպվեցին ներքին ու արտաքին քաղաքականության հերթական խնդիրները։ Պլենումում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի արտասանած խոր, բովանդակալից ճառում շարադրված սկզբունքային դրույթներն ու քաղաքական հետևությունները նոր, խոշոր ներդրում են կոմունիստական շինարարության տեսության ու պրակտիկայի մեջ։

Պլենումի արդյունքներն արժանացան կոմունիստների, սովետական բոլոր մարդկանց միահամուռ հավանությանը, նրանց կողմից ընկալվեցին որպես գործողության, մեր կազմակերպչական ու դաստիարակչական ողջ աշխատանքի կոնկրետ, մարտական ծրագիր։ Սովետական Ուկրաինայի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ինտելիգենցիան, ինչպես և ողջ սովետական ժողովուրդը լի են նախանշած պլանների կատարման վճռականությամբ։

Սովետական հասարակության զարգացման դինամիզմը, մեր տնտեսական աճի վիթխարի մասշտաբները, ակտիվ գործունեությունը միջազգային ասպարեզում, պատմական զարգացման ողջ ընթացքը համոզիչ կերպով ցույց են տալիս, որ, կոմունիստական շինարարության խնդիրների ընդլայնմանը զուգընթաց, աճում է կուսակցության՝ որպես բանվոր դասակարգի քաղաքական կազմակերպության բարձրագույն ձևի, բոլոր աշխատավորների ավանգարդի ղեկավար և ուղղություն տվող դերը։ Սահմանելով հասարակության զարգացման գլխավոր հեռանկարը, ՍՄԿԿ մշտապես կատարում է հսկայական նշանակություն ունեցող տեսական ու գործնական աշխատանք, որի նպատակը սոցիալիստական հասարակական սիստեմի առավելությունների, գիտատեխնիկական



հեղափոխության լայն հնարավորությունների արդյունավետ օգտագործումն է՝ հանուն սոցիալիստական հայրենիքի հետագա բարգավաճման, նրա տնտեսական ու պաշտպանական հզորության ամրապնդումը, սովետական մարդկանց կենսամակարդակի բարձրացումը։

Այժմ, երբ ՍՄԿԿ XXV համագումարը սահմանել է մեր տևական նպատակները, առաջադրել նոր պատասխանատու խնդիրներ, առավել մեծանում է դրանց լուծման ամենաարդյունավետ միջոցների և ուղիների ճիշտ օգտագործման նշանակությունը։ Ուստի, չափազանցություն չի լինի, եթե ասենք, որ կադրերի կողմից աշխատանքի լենինյան ոճի տիրապետումն այսօր մեր բոլոր ջանքերի առանցքն է։ Այդ մասին, որպես կուսակցական ղեկավարության կարևոր պայմանի, ուղղակի ասված է XXV համագումարին ներկայացված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ։

Լենինյան ոճի հաստատման հիանալի օրինակ է մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի, նրա քաղբյուրոյի գործունեությունը։ Նպատակասլացությունը, մասշտաբային և գիտական մոտեցումը, հեռատեսությունն ու ռեալիզմը բնութագրում են Կենտկոմի ողջ աշխատանքը։ Գործարար, ստեղծագործա[illegible] մթնոլորտում, իսկական կոլեգիալության պայմաններում քաղբյուրոն համակողմանիորեն քննարկում և ժամանակին լուծում է երկրի հասարական-քաղաքական կյանքի հետագա զարգացման և կուսակցության արմատական խնդիրները, միջազգային հրատապ պրոբլեմները։

Կենտկոմի հոկտեմբերյան պլենումից հետո կայացած կուսակցական ժողովներում և ակտիվներում կոմունիստներն առանձին ջերմությամբ ու խանդավառությամբ նշեցին մեր կուսակցության Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղար ընկեր Լեոնիդ Իլյիչ Բրեժնևի ակնառու ներդրումը ՍՄԿԿ լենինյան քաղաքականության մշակման և իրականացման գործում։ Կյանքի համակողմանի իմացությունը, մտքի տեսական խորությունը և քաղաքական հեռատեսությունը, կազմակերպչի բոլշևիկյան սկզբունքայնությունն ու տաղանդը, կոմունիզմի գործին անձնվեր ծառայելը—աննկուն մարքսիստ-լենինյանի այս բոլոր հիանալի հատկանիշները—կուսակցության ու ժողովրդի, ողջ աշխարհի աշխատավորների հարգանքին ու անսահման սիրուն արժանացրին Լեոնիդ Իլյիչին, որի 70-ամյակը նշվեց այս օրերին։ Սոցիալիզմի միջազգային դիրքերի ամրապնդման, հեղափոխական, բոլոր պրոգրեսիվ ուժերի համախմբման նպատակով ընկեր Լ. Ի. Բրեժնևի գործադրած անդուլ ջանքերը, համընդհանուր խաղաղությունն ամրապնդելու համար ազնիվ պայքարը նրան առաջ քաշեցին համաշխարհային կոմունիստական ու բանվորական շարժման ամենաականավոր գործիչների, առավել հեղինակավոր քաղաքական ու պետական ղեկավարների շարքը։

ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն և քարտուղարությունը մեզ բոլորիս օրինակ են ցույց տալիս, թե տիրապետելով աշխատանքի լենինյան ոճին, ինչպես պետք է խորապես կուսակցականորեն վերաբերվել համագումարի որոշումների կատարմանը, համառորեն ու հետևողականորեն պայքարել դրանց իրագործման համար։

Կուսակցական ղեկավարության լենինյան ոճը ենթադրում է ամենից առաջ գիտական, ստեղծագործական մոտեցում քաղաքական ու տնտեսական խնդիրների լուծմանը—կադրերի ճիշտ ընտրություն, տեղաբաշխում և դաստիարակում, ներկուսակցական դեմոկրատիայի լայն զարգացում, կուսակցական կարգապահության ամրապնդում, անխզելի կապ մասսաների հետ, նրանց համոզելու և իր հետևից տանելու կարողություն, ձեռք բերածով երբեք չբավարարվելու, այլ միշտ առաջ գնալու ձգտում, քննադատության և ինքնաքննադատության հզոր զենքի հմուտ օգտագործում և կատարելագործում։ Անտարակույս, այս բոլոր հատկանիշներն էլ կարևոր են, և ամբողջության մեջ դրանց առկայությունն է միայն հնարավորություն ընձեռում հավատարիմ մնալու աշխատանքի լենինյան ոճի պահանջներին։

Կուսակցության XXV համագումարին ՍՄԿԿ Կենտկոմի ներկայացրած հաշվետու զեկուցման մեջ նշված է, որ լենինյան ոճը ստեղծագործական է, ենթադրում է խիստ պահանջկոտություն իր և ուրիշների նկատմամբ, բացառում է

ինքնագոհությունը, հակադրվում բյուրոկրատիզմի ու ֆորմալիզմի ամեն տեսակ դրսևորումներին։

Աշխատանքի ոճի կատարելագործման հարցերը ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի մշտական ուշադրության կենտրոնում են։ Կուսակցության XXV համագումարին հաջորդած ժամանակաշրջանում Կենտկոմը գործնականորեն քննարկել է այդ պրոբլեմի բոլոր կարևորագույն կողմերը, մասնավորապես՝ կադրերի հետ տարվող աշխատանքի, կոլեկտիվության սկզբունքի, կուսակցական կյանքի նորմերի պահպանման (Բելոռուսիայի կուսակցական կազմակերպության, Թբիլիսիի և Տաշքենդի քաղաքային կուսկազմակերպությունների վերաբերյալ որոշումները), քննադատության և ինքնաքննադատության վիճակը (Տամբովի մարզային կուսկազմակերպության վերաբերյալ որոշումը) և այլ հարցեր։

Ուկրաինայի կոմկուսակցության Կենտրոնական կոմիտեն, մարզկոմները, քաղկոմները, շրջկոմները, ղեկավարվելով ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով, ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումներով, հետևողականորեն իրագործում են միջոցառումներ՝ աշխատանքի իսկական լենինյան ոճը արմատավորելու, առաջադրված խնդիրների լուծման նկատմամբ խոր կուսակցական մոտեցում դրսևորելու համար։ Այս հարցերը համակողմանիորեն քննարկվել են կուսակցական ակտիվի ժողովներում և կուսակցական կոմիտեների պլենումներում, դրանց քարտուղարների, մինիստրությունների ու գերատեսչությունների ղեկավարների խորհրդակցություններում, Ուկրարհխորհրդի նախագահության անդամների, արհմիությունների հանրապետական ու մարզային կոմիտեների նախագահների, ՈւկրԼԿԵՄ Կենտկոմի բյուրոյի անդամների և կոմերիտմիության մարզկոմների առաջին քարտուղարների հետ Ուկրաինայի կոմկուսակցության Կենտկոմի քաղբյուրոյի անդամների ու անդամության թեկնածուների ունեցած հանդիպումներում։

Անցած հաշվետու-ընտրական ժողովները ցույց տվեցին, որ կուսակցական կազմակերպությունների գործունեության մեջ տեղի են ունեցել նկատելի դրական փոփոխություններ։ Կուսակցական կոմիտեների ճնշող մեծամասնությունն իր ուշադրությունը կենտրոնացնում է էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի զարգացման խոշոր, հեռանկարային հարցերի վրա, դրանք լուծում գործարար կերպով, առարկայականորեն, կուսակցական մարմիններին հատուկ մեթոդներով։ Միաժամանակ ՍՄԿԿ XXV համագումարի վեհ պահանջների լույսի ներքո վերլուծելով կատարվածը՝ տեսնում ենք, որ թեև աշխատում ենք շատ ու լարված, բայց միշտ չէ, որ մեր գործադրած ջանքերը տալիս են անհրաժեշտ արդյունք։

Իհարկե, մենք հասկանում ենք, որ լենինյան ոճի տիրապետումը կենդանի ու ստեղծագործական պրոցես է։ Իր գործունեության բոլոր փուլերում մեր կուսակցությունը մշտապես հոգացել և շարունակում է հոգալ աշխատանքի ոճի կատարելագործման մասին՝ հաշվի առնելով ընթացիկ ու առաջիկա խնդիրները։ Բայց այդ դեպքում էլ միշտ անփոփոխ են մնում Վ. Ի. Լենինի մշակած ոճի հիմնարար սկզբունքներն ու հատկանիշները։

## ԳԻՏԱԿԱՆ, ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՄՈՏԵՑՈՒՄԸ ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԳՐԱՎԱԿԱՆՆ Է

Կուսակցական ղեկավարության ոլորտում գիտական, ստեղծագործական մոտեցումը ողջ աշխատանքի հիմքերի հիմքն է։ Դրա բաղադրամասերն են՝ մարքս-լենինյան տեսության խոր իմացությունն ու ստեղծագործական կիրառումը, հնարավորությունների և ուժերի ստույգ հաշվառումը, պլանների համարձակությունն ու ռեալությունը։ Այդ բանը մեծ ուժով շեշտեց կուսակցության XXV համագումարը։ Իր ողջ հեղափոխական-վերափոխիչ գործունեությունը, համագումարում ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, ՍՄԿԿ-ն կառուցում է մարքս-լենինյան տեսության ամուր հիմքի վրա։ Մարքսիզմ-լենինիզմը միակ հուսալի հիմքն է ճիշտ ստրատեգիա և տակտիկա մշակելու համար։

Գիտական մոտեցումն արտահայտվում է ամենից առաջ այն բանում, որ պատմական յուրաքանչյուր փուլում կուսակցությունը հասարակական զարգացման օրենքների խոր իմացությամբ է մշակում ռեալիստական քաղաքականություն, միլիոնավոր ժողովրդական զանգվածներին համոզում դրա ճշտության մեջ և կազմակերպում նրանց՝ կենսագործելու նշած ծրագիրը։



Կոմունիստական շինարարության խնդիրների լուծման նկատմամբ մեր կուսակցության նման մոտեցման վառ օրինակ է ընթացիկ հնգամյակի մշակումը։ Թերևս, առաջին անգամ է, որ հնգամյա պլանը, տնտեսական ստրատեգիան որոշվել են՝ խիստ հանգամանորեն հաշվի առնելով մեր հայրենիքի զարգացման տևական հեռանկարը։ Հնգամյա պլանի խոր ու համակողմանի, հիրավի համաժողովրդական քննարկումը հաստատեց նրա իսկական գիտական հիմքը, դարձավ մեր կարգերի դեմոկրատիզմի մի նոր համոզիչ վկայությունը։

Ուկրաինայի կոմկուսակցության Կենտրոնական կոմիտեն, հանրապետության կուսակցական կոմիտեները, ղեկավարվելով ՍՄԿԿ Կենտկոմի ցուցումներով և հետևելով նրա օրինակին, անում են ամեն ինչ, որպեսզի անշեղորեն ապահովեն գիտական մոտեցումն իրենց գործունեության մեջ, ստեղծագործաբար լուծեն հասունացած պրոբլեմները։

Կարելի է թվարկել բազմաթիվ օրինակներ, թե հանրապետության կուսակցական կոմիտեներն ինչպես են մշակում մեր ողջ աշխատանքի համար որոշիչ նշանակություն ունեցող խոշոր հեռանկարային հարցերը։

Դրանք են, մասնավորապես, ժողովրդական տնտեսության մեջ տեխնիկական առաջընթացի արագացման, էկոնոմիկայի կառավարման կատարելագործման միջոցառումները, արդյունաբերության, ինչպես նաև գյուղատնտեսական արտադրության մեջ միջտնտեսային կոոպերացման ու ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա հետագա համակենտրոնացման ու մասնագիտացման խնդիրները, կադրերի ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության բարելավումը, սկզբնական կուսակցական կազմակերպությունների դերի բարձրացումը, գաղափարական աշխատանքում կոմպլեքսային մոտեցման ապահովումը և այլն։ Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում ընկեր Լ. Ի. Բրեժնևը բարձր գնահատեց Ուկրաինական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի աշխատանքը. արտադրության հետ գիտության կապի ամրապնդման ասպարեզում Ուկրաինայի կոմկուսակցության Կենտկոմի, Կիևի, Լվովի, Դնեպրոպետրովսկի և այլ մարզերի կուսակցական կազմակերպությունների ծավալած արդյունավետ գործունեությունը։

Գիտական մոտեցման, ողջ աշխատանքի արդյունավետության, որակի բարձրացման կարևորագույն նախադրյալներն են՝ ունենալ առանց գրոհայնության ու ճախողման գործելու հմտություն, տեսնել հեռանկարը, չմանրանալ, չթաղվել բազմապիսի ընթացիկ գործերի մեջ, կոմպլեքսայնորեն լուծել հրատապ խնդիրները։

Ժողովրդական տնտեսության զարգացման բարդ պրոբլեմների լուծման նկատմամբ հեռանկարային, գիտականորեն հիմնավորված մոտեցման լավ օրինակ է արտադրանքի որակի բարձրացման համար կուսակցության Լվովի մարզկոմի ծավալած աշխատանքը։ Հայտնի է, որ որակի պրոբլեմն ունի ո՛չ միայն նեղ տնտեսական, այլև սոցիալ-քաղաքական նշանակություն։ Այն բովանդակում է աշխատանքի և նյութական ռեսուրսների խնայողությունը, ուղղակիորեն առնչվում է սովետական մարդկանց ամենաբազմապիսի պահանջների բավարարման, համաշխարհային շուկայում սովետական մակնիշի հեղինակության հետ։ Այլ խոսքով, արտադրանքի որակը ժամանակակից արտադրության մակարդակի խտացված ցուցանիշն է։ Այդ իսկ նկատառումով Լվովի մարզի առաջավոր ձեռնարկությունները մշակել ու արմատավորել են արտադրանքի որակի կառավարման միջոցառումների կոմպլեքսային, գիտականորեն հիմնավորված սիստեմ։ Այդ փորձը, ինչպես հայտնի է, արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի բարձր գնահատականին։

Նշված սիստեմի կիրառումը տվեց ամենադրական արդյունքներ։ Անցած հինգ տարում Լվովի մարզում բարձր կարգի արտադրանքի տեսակարար կշիռն արտադրության ընդհանուր ծավալում ավելացել է 7, իսկ պետական որականիշով արտադրանք թողարկող ձեռնարկությունների թիվը՝ գրեթե 5 անգամ։

Լվովյան սիստեմի արժեքավորությունը նաև այն է, որ ներառել է արտադրանքի որակի համար Մոսկվայի ու Լենինգրադի, Սարատովի, Սվերդլովսկի և այլ քաղաքների աշխատողների ծավալած պայքարի փորձը։

Կյանքը, աշխատավորների գիտակցական ստեղծագործությունը ծնեցին այնպիսի հիանալի երևույթ, որպիսիք են աշխատանքային կոլեկտիվների, քաղաքների, գյուղերի, ամբողջ շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային պլանները։ Օրինակ, Կիևի սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային պլանում սահմանվել են հանրապետության մայրաքաղաքի հետագա զարգացման գլխավոր ուղղությունները, նախատեսվել է լուծել այնպիսի կարևոր պրոբլեմներ, ինչպիսիք են՝ արտադրության արդյունավետության բարձրացումը, աշխատանքային ռեսուրսների առավել լավ օգտագործումն արդյունաբերության մեջ, շինարարությունում, քաղաքային տնտեսությունում, տրանսպորտում։ Նախատեսվել են կոմպլեքսային լայն միջոցառումներ կիևցիների աշխատանքային ու կենցաղային պայմանների բարելավման, բնակարանային և սոցիալ-կենցաղային շինարարության, առողջապահության, կենցաղսպասարկման ոլորտի զարգացման ծրագիր և այլն։ Պլանի հաջող կատարումը, անտարակույս, կարևոր ուղենիշ կլինի Կիևը մեր հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայի օրինակով բարձր-արտադրողական աշխատանքի, բարձր կուլտուրայի և օրինակելի հասարակական կարգի, իսկ հեռանկարում՝ օրինակելի կոմունիստական քաղաք դարձնելու ճանապարհին։

Հարկավոր է շեշտել, որ սոցիալ-տնտեսական պլանավորումն իրականացվում է մեր հանրապետության ո՛չ միայն խոշոր կենտրոններում։ Գիտական կոլեկտիվների ակտիվ օգնությամբ այդպիսի պլանավորման դրական փորձ են կուտակել, օրինակ, Դոնեցկի մարզի Վոլնովախի շրջանի կուսակցական կազմակերպությունները։ Հանրապետությունում սոցիալ-տնտեսական զարգացման կոմպլեքսային պլաններ ունեն արդեն ձեռնարկությունների կոլեկտիվների ավելի քան 70 տոկոսը, շատ գյուղեր, քաղաքներ ու շրջաններ։ Իհարկե, այդ պլանները հաճախ դեռ հեռու են կատարելությունից։ Բայց արդեն եղած փորձը վկայում է դրանց մեծ ապագայի մասին, հավատ ներշնչում, որ այստեղ ևս գիտության և պրակտիկայի դաշինքը հնարավորություն կընձեռի հասնելու նոր բնագծերի։

Կուսակցական աշխատանքի հեռանկարային պլանավորումը ծառայում է գիտական մոտեցման խորացմանը։ «...չի կարելի աշխատել,— ասել է Լենինը,— առանց երկարատև ժամանակաշրջանի համար կազմված և լուրջ հաջողություն խոստացող պլանի» (Երկեր, հ. 31, էջ 647)։ Այժմ հեռանկարային պլանավորումը գործնականորեն արմատավորվել է հանրապետության բոլոր կուսակցական կոմիտեներում։ Գործի շահերը պահանջում են այսուհետ ևս շարունակել այդ աշխատանքը գիտական լուրջ հիմքի վրա, կատարելագործել հեռանկարային պլանների կառուցվածքը, խորացնել դրանց բովանդակությունը, խուսափել ձևականությունից։

Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի պրակտիկայում դարձել է կանոն՝ հանրապետական կուսակցական կազմակերպության գործունեության խոշոր հարցերի վերաբերյալ մշակել մեր առջև ծառացած խնդիրների կատարման կազմակերպական-քաղաքական ապահովման հեռանկարային կոնկրետ պլաններ։ Դա հնարավորություն է ընձեռում հստակորեն բաշխել ուժերը, կուսակցական կոմիտեների, պետական ու տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների ուշադրությունը կենտրոնացնել էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի զարգացման, մարդկանց դաստիարակության, աշխատավորների բարեկեցության բարձրացման հանգուցային պրոբլեմների լուծման վրա։ Այդպիսի միջոցառումներ մշակվեցին ՍՄԿԿ XXV համագումարից, ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թվական) պլենումից հետո։ Դրանք հավանության են արժանացել Ուկրաինայի կոմկուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումներում, հաշվի են առնվում Ուկրաինայի կոմկուսի Կենտկոմի քաղբյուրոյի, քարտուղարության, նրա բաժինների աշխատանքի ընթացիկ պլանները կազմելիս։

Գիտական մոտեցմանը, ճիշտ որոշումների մշակմանն զգալի չափով



նպաստում է կուսակցական աշխատողների՝ քաղաքական իրադրությունը, առօրյա իրադարձություններն ու փաստերը խորապես ըմբռնելու, դրանք ճիշտ գնահատելու, կենսական հրատապ պրոբլեմների առավել ճիշտ լուծումներ գտնելու կարողությունը։ Այստեղ կարևոր դեր են խաղում կոնկրետ սոցիոլոգիական հետազոտությունները։ Դրանք կուսակցական կոմիտեներին և սկզբնական կուսկազմակերպություններին հնարավորություն են ընձեռում ուսումնասիրելու իրենց աշխատանքի արդյունավետությունը, օբյեկտիվ տվյալներ ստանալու աշխատանքային կոլեկտիվների կյանքի ու գործունեության տարբեր կողմերի, մարդկանց տրամադրությունների ու պահանջների մասին։

Բավական լայն է այն հարցերի շրջանակը, որոնք ուսումնասիրում են սոցիոլոգները, ելնելով, այսպես ասած, կուսակցական կոմիտեների շահերից։ Կարևոր է, որ այդ գործը որոշակիորեն մասնագիտացվել է։ Այսպես, կուսակցության Դնեպրոպետրովսկի քաղկոմի սոցիոլոգիական հետազոտությունների հասարակական ինստիտուտն ուսումնասիրում է կուսակցական-կազմակերպական և գաղափարական աշխատանքի արդյունավետության, Դոնեցկի ինստիտուտը՝ կուսակցական պրոպագանդայի և գաղափարական ներգործության միջոցների արդյունավետության պրոբլեմները, Լվովինը՝ կրոնի սոցիոլոգիայի հարցերը։ Կուսակցության Ղրիմի մարզի Սևաստոպոլի, Սիմֆերոպոլի, Կերչի, Ջանկոյի քաղկոմներին, Սակիի, Պերվոմայսկի, Բելոգորսկի շրջկոմներին կից գործող սոցիոլոգիական խմբերը հետազոտում են մարքս-լենինյան, տնտեսագիտական կրթության արդյունավետության, արտադրական կոլեկտիվների բարոյա-հոգեբանական մթնոլորտի, երիտասարդության սոցիալական ակտիվության պրոբլեմները և այլն։

Անշուշտ, այստեղ չլուծված խնդիրներ դեռևս շատ կան։ Սոցիոլոգիական հետազոտությունները, օրինակ, ինչպես հարկն է, դեռ չեն շոշափել այնպիսի կարևոր հարց, ինչպիսին է մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցների ներգործունությունը, քիչ է ուսումնասիրվում անհատի վրա դրանց սոցիալ-հոգեբանական ազդեցության աստիճանը։ Անտարակույս, սոցիոլոգիական հետազոտությունը բարդ գործ է, որը պահանջում է և՛ սոցիոլոգների, և՛ կուսակցական աշխատողների լուրջ պատրաստություն։

Միանգամայն հասկանալի է, որ յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն, յուրաքանչյուր կուսակցական կոմիտե ունի տնտեսական, սոցիալական և դաստիարակչական խնդիրների լուծման՝ կոնկրետ պայմաններում կուտակած սեփական փորձ։ Ինչպես ցույց է տալիս կյանքը, այն հաճախ պարունակում է հիրավի արժեքավոր տարրեր, որոնք հարստացնում են մեր ողջ կուսակցական աշխատանքի փորձը։ Եվ ճիշտ են վարվում այն կուսկոմիտեները, որոնք աշխատանքի ուսանելի փորձ կուտակած կուսկազմակերպությունները առանձնացնում են որպես բազային կազմակերպություններ։

Կուսակցական աշխատանքի պրակտիկայում ողջ նորի ու առաջավորի ընդհանրացումը, դրանց գիտականորեն հիմնավորված հանձնարարականների աստիճանի բարձրացումը կուսակցական կոմիտեների ակտիվ մասնակցությամբ կազմակերպվող գիտա-պրակտիկ և գիտա-մեթոդական կոնֆերանսների գլխավոր խնդիրն են։ Կուսակցական-կազմակերպական, գաղափարական աշխատանքի, տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարման պրակտիկայի հրատապ հարցերին նվիրված նման կոնֆերանսներ առավել հաճախ են կազմակերպվում մեր հանրապետությունում։ Ընդսմին, առանձնապես կարևորվում է Մոսկվայի, Լենինգրադի, եղբայրական հանրապետությունների մյուս քաղաքների կուսկազմակերպությունների աշխատանքի լավագույն փորձի ուսումնասիրումը։

Այսպիսով, պրակտիկան համոզիչ կերպով ցույց է տալիս, որ գիտության ու քաղաքականության օրգանական միասնությունը կուսակցական ղեկավարության կարևորագույն սկզբունքներից է։ Հենց դա էլ, ըստ Լենինի, օգնում է կոմունիզմը ֆորմուլաներից ու ծրագրերից դարձնելու միլիոնների աշխատանքը միավորող կենդանի ուժ, նրանց ջանքերն ուղղում՝ հասնելու առաջադրված նպատակներին։

Անշուշտ, սոցիալիզմի ժամանակ սոցիալական պրոցեսների ու երևույթների կառավարման նպատակը սկզբունքորեն այլ է։ Այն ենթադրում է անհատի կողմից իր ստեղծագործական ակտիվությունն արթնացնող արժույթային նորմերի ու դրույթների գիտակցական յուրացում։ Այդ ամենի մասին հարկավոր է լինում հիշեցնել, շեշտելու համար, որ անհրաժեշտ են ինչպես լուրջ հետազոտություններ, եթե կարելի է այսպես արտահայտվել, «գործնական մարդագիտության» վերաբերյալ, այնպես էլ աշխատություններ, որոնք բացահայտեն բուրժուական կեղծ գիտական կոնցեպցիաների տեսական սնանկությունն ու քաղաքական վնասակարությունը, կոնցեպցիաներ, որոնք վերջին ժամանակներս շարունակ ծնվում են երկրաչափական պրոգրեսիայով՝ կապիտալիստական կարգի դժվարությունների ու արատների խորացմանը զուգընթաց։

## ԿՈԼԵԿՏԻՎ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅՈՒՆԸ ԶՈՒԳԱԿՑԵԼ ԱՆՁՆԱԿԱՆ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅԱՆ ՀԵՏ

Կոմունիստական կուսակցությունը, նրա Կենտրոնական կոմիտեն անշեղորեն ու հետևողականորեն պահպանում են կոլեկտիվության լենինյան սկզբունքը՝ որպես կոլեկտիվ ղեկավարության բարձրագույն սկզբունք։ Դրա զարգացման ու հաստատման գործում բացառիկ կարևոր դեր խաղացին ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1964 թվական) և հետագա պլենումները, ՍՄԿԿ XXIII, XXIV և XXV համագումարները։ Կուսակցությունը վճռականորեն դատապարտեց վոլյունտարիզմը, սուբյեկտիվիզմը և վարչարարությունը, պրոժեկտյորությունը և պարադային ազմկարարությունը, խզումը կյանքից ու մասսաների պրակտիկ փորձից։

Ղեկավարության կոլեկտիվությունը բազմապատկում է կուսակցության ուժերը, նպաստում բոլոր կոմունիստների ակտիվության զարգացմանը, հնարավորություն ընձեռում ընդլայնելու և ամրապնդելու կապը մասսաների հետ։ Վերջին հաշվով, կուսակցության ողջ աշխատանքը կոլեկտիվ ջանքերի, այդ աշխատանքին նրա բոլոր անդամների ակտիվ, գիտակցական մասնակցության արդյունք է։ Յուրաքանչյուր կոմունիստ, նշում էր Լենինը, պետք է պատասխանատու լինի կուսակցության համար, ինչպես կուսակցությունն է պատասխանատու իր յուրաքանչյուր անդամի համար (տե՛ս ԵԼԺ, հ. 7, էջ 363)։

Ղեկավարվելով լենինյան այդ սկզբունքային դրույթներով, Ուկրաինայի կոմկուսակցության Կենտկոմը հետևողական աշխատանք է տանում կուսակցական կոմիտեների պլենումների, կուսակցական ժողովների դերի ու նշանակության հետագա բարձրացման համար։ Այդ բանին նպաստում են դրանց հրավիրման պարբերականության խիստ պահպանումը, քննարկվող հարցերի խելամիտ ընտրությունը, դրանց աշխատանքում գործարարության հաստատումը։

Կոլեկտիվության սկզբունքի հետևողական իրականացմանն զգալիորեն նպաստում է նաև ստեղծված այն պրակտիկան, երբ Ուկրաինայի կոմկուսակցության Կենտկոմի անդամները մասնակցում են նրա պլենումների նախապատրաստմանը։ Նրանց կարծիքներն ու առաջարկությունները լիովին հաշվի առնելու նպատակով նախօրոք (2—3 շաբաթ առաջ) ուղարկվում են զեկուցումների թեզիսները և որոշումների նախագծերը։ Կարևոր նշանակություն ունի նաև այն, որ Ուկրաինայի կոմկուսակցության Կենտկոմի քաղբյուրոն կանոնավոր կերպով ինֆորմացիա է տալիս Կենտկոմի անդամներին ընդունված որոշումների կատարման ընթացքի, կադրերի տեղաբաշխման մեջ տեղի ունեցած փոփոխությունների մասին և այլն։

Կուսակցական ղեկավարման ոճի կատարելագործման համար արմատական նշանակություն ունի կուսակցական ստորին ընտրովի օղակների ակտիվի հետ տարվող աշխատանքի բարելավումը։ Ուկրաինայի կոմկուսակցությունում այժմ ավելի քան 770 հազար կոմունիստներ ընտրվել են սկզբնական, արտադրամասային կուսկազմակերպությունների քարտուղարներ, կուսխմբերի կազմակերպիչներ, կուսկոմիտեների և բյուրոների, կուսակցության մարզկոմների, քաղկոմների, շրջկոմների անդամներ։ Ավելի քան 120 հազար ՍՄԿԿ անդամներ հասարակական հիմունքներով մասնակցում են կուսակցության մարզկոմներին, քաղկոմներին, շրջկոմներին կից ստեղծված տարբեր հանձնաժողովների, խորհուրդների, արտահաստիքային բաժինների, սեկտորների աշխատանքներին։ Ավելի քան 150 հազար կոմունիստներ ընտրվել են ադմինիստրացիայի գործունեությանը վերահսկող հանձնաժողովների կազմում։



Դա կուսակցականների մի վիթխարի բանակ է, որոնք կանգնած են ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների կենսագործման համար ծավալվող պայքարի ամենաառաջավոր գծում։ Մենք ձգտում ենք, որպեսզի ընտրովի կուսակցական մարմնի կազմում ընտրված յուրաքանչյուր կոմունիստ իմանա, որ կոլեգիալ ղեկավարության անդամ լինել, նշանակում է, ամենից առաջ, ապահովել անձնական առավելագույն ներդրումը նրա հաջող աշխատանքում, իսկական մարտական հատկություններ դրսևորել ֆորմալիզմը, պահպանողականությունը, անտարբերությունը և բացասական մյուս երևույթները արմատախիլ անելու գործում, վճռականորեն ու անդրդվելիորեն պայքարել կուսակցության որոշումների կենսագործման համար։

Հասկանալի է, այդ հատկությունները հենց այնպես չեն առաջանում։ Դրանց ձևավորման ու զարգացման համար պահանջվում է կուսակցական կոմիտեների, բյուրոների, քարտուղարների, ապարատի աշխատողների ամենօրյա, մանրակրկիտ աշխատանք։ Պրակտիկայում, դժբախտաբար, դեռևս չեն վերացել իսկական կոլեկտիվությունը, մարդկանց հետ տարվող ստեղծագործական աշխատանքը գրասենյակային-բյուրոկրատական մեթոդներով փոխարինելու փաստերը։

Ուկրաինայի կոմկուսակցության Կենտկոմը նման փաստեր բացահայտել ու քննադատել է Ժիտոմիրի, Օդեսայի, Խմելնիցկու մարզերի առանձին քաղկոմների ու շրջկոմների գործունեության մեջ։ Մարզային, քաղաքային և շրջանային կուսակցական հաշվետու-ընտրական կոնֆերանսներում պատգամավորները նույնանման թերությունների համար քննադատել են Վոլինի, Սումիի, Տերնոպոլի, Անդրկարպատյան և այլ մարզերի որոշ քաղկոմների ու շրջկոմների աշխատանքը։

Ղեկավարման իսկական կոլեկտիվությունը պահանջում է մշտապես հենվել մասսաների վրա։ Կուսակցությանը խորապես խորթ են ինչպես մասսաների ստեղծագործական դերի աղանդավորական թերագնահատումը, սուբյեկտիվիզմը, այնպես էլ աջ օպորտունիստական խոնարհումը տարերայնության առջև, պոչականությունը։ Մասսաներին հաջողությամբ ու արդյունավետ ղեկավարել կարելի է միայն այն դեպքում, երբ ողջ կուսակցությունը և նրա մարմինները տեղերում իրենց գործունեության ընթացքում խորհրդակցում են ժողովրդի հետ, հաշվի առնում նրա կամքն ու շահերը, հենվում աշխատավորների փորձի վրա։ Հենց այդպիսի մոտեցումն էլ այժմ դարձել է կուսակցական կյանքի նորմա։

Ղեկավարման կոլեգիալության սկզբունքի զարգացումը մեծ ու բարդ գործ է։ Բանը միայն այն չէ, որ կոլեկտիվությունը պահպանվի ձևով, ասենք, կանոնավոր կերպով գումարվեն նիստերն ու ժողովները։ Երբեմն լինում է նաև այնպես, որ կոլեկտիվությամբ քողարկում են անգործությունը, հարցի լուծումից, պատասխանատվությունից խուսափելու, անհաջողության դեպքում ինքնապահովագրման ձգտումը։ Մենք մշտապես ղեկավարվում ենք լենինյան այն ցուցումով, թե «... անպատասխանատվությունը, որ քողարկվում է կոլեգիալության վկայակոչումով, ամենավտանգավոր չարիքն է» (Երկեր, հ. 29, էջ 537)։

Արդեն հանրաճանաչ է դարձել քննարկումը՝ համատեղ, իսկ պատասխանատվությունը՝ միանձնյա լենինյան ֆորմուլան։ Ուստի և զարգացնելով կոլեգիալությունը, մենք ամեն կերպ ձգտում ենք բարձրացնել կադրերի անձնական պատասխանատվությունը պլանների կատարման, աշխատանքի որակի համար, նրանց դաստիարակել իրենց և ուրիշների նկատմամբ խստապահանջության, ձևոք բերածով անբավական լինելու ոգով։ Կարելի է ասել, անձնական պատասխանատվությունը կուսակցական աշխատանքի այբուբենն է։ Երբ որոշում է ընդունվում, պետք է միանգամայն պարզ լինի, թե ո՛վ է պատասխանատու դրա կատարման համար։ Եվ ճիշտ այդպես էլ պետք է պարզ լինի, թե ո՛վ է պատասխանատու, երբ ձգձգվում է հասունացած խնդիրների լուծումը։

Վ. Ի. Լենինը նշում էր. «Քաղաքական ղեկավարը պատասխանատու է ո՛չ միայն այն բանի համար, թե ինչպե՛ս է ղեկավարում, այլև այն բանի համար, թե ի՛նչ են անում նրանք, որոնց ղեկավարում է նա: Այդ նա երբեմն չգիտե, այդ հաճախ նա չի ուզում, բայց պատասխանատվությունն ընկնում է նրա վրա» (Երկեր, հ. 32, էջ 21—22): ՍՄԿԿ XXV համագումարում շեշտվեց այն բանի կարևորությունը, որ կառավարման բոլոր մակարդակներում հստակորեն որոշվեն իրավունքների ու պատասխանատվության ծավալն ու հարաբերակցությունը: Այդպիսի մոտեցման հրատապությունն առանձնապես մեծ է հիմա, երբ անհրաժեշտ է լինում լուծել որակապես նոր խնդիրներ, երբ ղեկավար կադրերից, ինչպես անցյալում երբեք, պահանջվում է ո՛չ միայն արտադրական պրոցեսների կառավարումը ժամանակակից մակարդակով կազմակերպելու, այլև կոլեկտիվում պատշաճ հոգեբանական, բարոյական մթնոլորտ ստեղծելու հմտություն, երբ պահանջվում են մտածողության համարձակություն և գործողությունների կոնկրետություն:

Իհարկե, ամենևին հեշտ չէ որոշել տարբեր ֆունկցիաներ կատարելու համար այս կամ այն աշխատողի պիտանիության չափը: Բայց լավագույն ատեստացիան ամենից առաջ աշխատանքի պրակտիկ արդյունքներն են: Եվ եթե դրանք ցույց են տալիս, որ ղեկավարը չի քայլում ժամանակին համընթաց, չունի համապատասխան ձեռնհասություն, անհրաժեշտ նախաձեռնություն և գործարարություն, ապա հարկավոր է ժամանակին անհրաժեշտ հետևություններ անել: Նման մոտեցման դեպքում, անտարակույս, կկատարվեն զգալիորեն ավելի քիչ սխալներ, և բոլոր խնդիրներն էլ կլուծվեն առավել հաջողությամբ:

Ուկրաինայի կոմկուսակցության Կենտկոմը ձգտում է գործն այնպես կազմակերպել, որ ոչ մի աշխատող, ինչպիսի բարձր պաշտոն էլ նա գրավի, դուրս չմնա կուսակցական կազմակերպության վերահսկողությունից: Ոչ մեկին չպետք է թույլատրվի մի քայլ իսկ նահանջել կուսակցական կանոնադրության պահանջներից, մեր կուսակցությունում սահմանված նորմերից ու կարգուկանոնից, մեր պետության օրենքներից: Մենք ելնում ենք այն բանից, որ կուսակցության անդամի կատարած ամեն մի խախտում և չարաշահում կամ մասնակցությունը դրան, ինչպես և խախտողների նկատմամբ հանդուրժողական, լիբերալ վերաբերմունքը անհամատեղելի են կուսակցության շարքերում, առավել ևս՝ ղեկավար պոստում գտնվելու հետ:

Պրակտիկայում հաճախ լինում է և այնպես, որ մի տեղամասում գործը ձախողած կամ վարկաբեկված աշխատողներին տեղափոխում են այլ պատասխանատու պաշտոնների: Որոշ կազմակերպություններում իրենց վատ չեն զգում այնպիսի մարդիկ, որոնք ինչպես հարկն է չգիտեն գործը, բայց ունեն ստորաքարշության, շողոքորթության մեծ փորձ, կարողանում են շրջանցել սահմանված կանոնները և նույնիսկ՝ օրենքները: Կյանքը ցույց է տալիս, որ մեծ վնաս է հասցնում ոչ պիտանի, վարկաբեկված այդպիսի աշխատողներին բանիմաց, ազնիվ մարդկանցով ժամանակին չփոխարինելը:

Մյուս կողմից, մենք վճռականորեն կանխարգելում ենք կադրերին զրպարտելու, նրանց նկատմամբ անվստահություն սերմանելու, ղեկավար աշխատողների և աշխատավոր զանգվածների միջև սեպ խրելու բոլոր փորձերը: Սակայն պաշտպանելով մեր կադրերի հեղինակությունը, միաժամանակ պայքարում ենք նրանց դեմ, ովքեր իրենց արարքներով արատավորում են կուսակցության անդամի կամ կոլեկտիվի ղեկավարի բարձր կոչումը: Չի կարելի կադրերի նկատմամբ հոգատարության անվան տակ հաշտվել այնպիսի մարդկանց հետ, ովքեր անպատասխանատվությամբ են վերաբերվում գործին, խախտում են կուսակցական և պետական կարգապահությունը, պաշտոնական դիրքն օգտագործում շահադիտական նպատակներով:

Ուկրաինայի կոմկուսակցության Կենտկոմը պահանջում է, որ կուսակցական կոմիտեները, ղեկավարվելով ՍՄԿԿ կանոնադրությամբ, սկզբունքորեն, կուսակցական խստագույն պահանջկոտությամբ գնահատեն այդպիսի մարդկանց գործունեությունը, անհապաղ կարգի հրավիրեն նրանց: «Կուսակցության ցուցակային անդամներ,— շեշտում էր Լենինը,— մեզ ձրի էլ հարկավոր չեն:



Աշխարհում միակ կառավարական կուսակցությունը, որը ոչ թե անդամների թվի մեծացման, այլ նրանց որակի բարձրացման, «խցկվածներից» կուսակցությունը զտելու մասին է հոգում, մեր կուսակցությունն է՝ հեղափոխական բանվոր դասակարգի կուսակցությունը» (Երկեր, հ. 30, էջ 60):

Ամեն մի տեղամասում հաջող աշխատանքի գրավականը կոլեկտիվը համախմբելու, աշխատանքային, գործարար, ստեղծագործական իրադրություն ստեղծելու՝ ղեկավարի ունակությունն է: Հասկանալի է, այս գործում հսկայական դեր են խաղում ղեկավարի անձը, նրա կազմակերպչական ունակությունները, ձեռնհասությունը, գաղափարական ու բարոյական պաշարը, աշխատանքում հասարակական կազմակերպությունների վրա հենվելու հմտությունը:

Այս առումով ուշագրավ են հետազոտությունների այսպիսի հետևությունները: Խարկովի մի շարք ձեռնարկությունների բանվորներին, ինժեներա-տեխնիկական աշխատողներին, ծառայողներին արված հարցումը ցույց է տվել, որ նրանք մեծ կարևորություն են տալիս կոլեկտիվում տիրող բարոյա-հոգեբանական մթնոլորտին: Այսպես, հարցման ենթարկվածների մոտ 70 տոկոսը պնդում էր, որ իրենց համար ամենակարևորն է աշխատանքը համերաշխ կոլեկտիվում: Հարցման ենթարկվածների մոտ իր նշանակությամբ երկրորդ տեղում է կողմնորոշումը դեպի կոլեկտիվի գործիմաց ղեկավարը, որը կարողանում է ճիշտ հարաբերություններ հաստատել ենթակաների հետ: Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ աշխատանքային կարգապահությունը խախտողների նկատմամբ հասարակական ներգործության միջոցներն, ընդհանուր առմամբ, ավելի արդյունավետ են, քան վարչական սանկցիաները:

Պրակտիկան վկայում է, որ ղեկավարի հեղինակության համար շատ կարևոր են նրա մատչելիությունը ենթակաների հետ ունեցած հարաբերություններում, մարդկանց իր կողմը գրավելու, նրանց նկատմամբ միշտ կոմունիստաբար ուշադիր լինելու ունակությունը: Ոչինչ այնքան չի վնասում հեղինակությանը, որքան հոգեկան չորությունը, գոռոզամտությունը, պարծենկոտությունը: Բայց մեղքներս ի՞նչ թաքցնենք, դեռևս մեզ մոտ կան առանձին ղեկավարներ, որոնք հազվադեպ են հանդիպում բանվորների ու մասնագետների հետ, քիչ են լինում արտադրությունում, հատկապես գիշերային հերթափոխերում, տարիներով չեն մտնում գործարանային ակումբ և բանվորական հանրակացարան:

Կուսակցական կադրերի շփումը աշխատավորների հետ, նրանց տրամադրությունների, ստեղծագործական փորձի ուսումնասիրումը մեծ նշանակություն ունեն: Ինչպես նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը Լիխաչովի անվան ավտոգործարանի բանվորների հետ ունեցած հանդիպման ժամանակ, այդպիսի հանդիպումը հսկայական օգուտ է բերում նաև հենց իրենց՝ կուսակցական կադրերին, դա «ամեն անգամ ներքին մեծ գոհունակության աղբյուր է, եռանդի և լավատեսության լավ լիցք»:

Հանրապետության կուսակցական կազմակերպություններն ունեն աշխատավորների հետ ղեկավար կադրերի շփման ամենաբազմապիսի ձևերի կիրառման բավական մեծ փորձ: Լայնորեն կիրառվում են կուսակցական կոմիտեների ղեկավարների հաշվետվությունները պլենումներում, աշխատանքային կոլեկտիվներում նրանց քաղաքական զեկուցումները, «լենինյան հինգշաբթիները», «միասնական քաղօրերը» և այլն:

Ընդլայնելով ղեկավարման կոլեկտիվությունը, մշտապես ամրապնդելով կապը մասսաների հետ, ուժեղացնելով կադրերի անձնական պատասխանատվությունը, մեր կուսակցությունը հանդես է գալիս որպես սովետական ողջ ժողովրդի փորձված կոլեկտիվ առաջնորդ ու կազմակերպիչ: Կուսակցության և ժողովրդի շարունակ զարգացող, օրեցօր ամրապնդվող անխզելի միասնությունը մեր նոր հաղթանակների ու մեծագործությունների գլխավոր գրավականն է:

# ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՍՄՈՒՆՔԸ ԵՎ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ

Մ. Խ. ԻԳԻԹԽԱՆՅԱՆ

ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ բախտը անխզելիորեն կապված է բանվոր դասակարգի համաշխարհային-պատմական առաքելության հետ։ Այդ ուսմունքը մեր ժամանակի ամենաառաջավոր դասակարգին տալիս է կապիտալի իշխանությունից ազատագրվելու, համաշխարհային կուլտուրայի ու քաղաքակրթության նվաճումները պահպանելու և նոր, կոմունիստական հասարակարգ կերտելու ճշգրիտ եղանակներ ու մեթոդներ։

Մարքսիզմ-լենինիզմի ուժի ու ներգործունության հարցը, այն հարցը, թե իրոք գիտական է այդ ուսմունքը, այսինքն՝ ունակ է ճիշտ արտացոլելու օբյեկտիվ աշխարհը, հասարակության վերափոխման պայմաններն ու աղբյուրները, օգնելու բանվոր դասակարգին, աշխատավորներին՝ իրոք հասնելու իր գիտակցած նպատակներին, այժմ արդեն զուտ տեսական վեճերի շրջանակներից դուրս է։ Այդ հարցին պատասխանել են վերջին տասնամյակներում աշխարհի քաղաքական քարտեզի վրա տեղի ունեցած արմատական փոփոխությունների փաստերի ողջ ռեալությունը, արդի պատմական զարգացման բոլոր առաջատար նկրտումները։

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակը, զարգացած սոցիալիստական հասարակարգի կառուցումը ՍՍՀՄ-ում, համաշխարհային սոցիալիստական սիստեմի առաջացումն ու զարգացումը, գաղութային տերությունների փլուզումը և անցյալում ճնշված տասնյակ ազգերի ու ազգությունների հանդես գալը պատմական ակտիվ ստեղծագործության ասպարեզ, մոլորակի բոլոր առաջադեմ ուժերի համախմբումը խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալական պրոգրեսի համար մղվող պայքարում — այս ամենը մարքսիզմ-լենինիզմի ճշմարտացիության, նրա գիտական կանխատեսության ուժի համոզիչ վկայություններն են։ Ավելին. դարագլուխ կազմող այդ պրոցեսներն իրենց վրա կրում են մարքս-լենինյան ուսմունքի հեղափոխական-վերափոխիչ հարաճուն ներգործության կնիքը։

## 1

ԱՎԵԼԻ ՔԱՆ ԵՐԿՈՒ ՀԱԶԱՐԱՄՅԱԿԻ ԸՆԹԱՑՔՈՒՄ մեկը մյուսին փոխարինելու եկած անցյալի սոցիալ-փիլիսոփայական ուսմունքները հումանիստական քիչ գաղափարներ չեն պարունակել իսկական հավասարության և արդարության հասարակարգի մասին։ Բայց ոչ այդ ուսմունքների նախակարապետների ու համախոհների անկեղծության ու ազնվության աստիճանը, ոչ լավագույն ապագայի համար եղած զոհերը անկարող են եղել մարդկությանը դուրս բերելու մասնավոր սեփականատիրական հարաբերությունների շրջանակներից, որոնց պայմաններում պրոգրեսը, Կ. Մարքսի պատկերավոր արտահայտությամբ, նման է եղել «այն նողկալի հեթանոսական կուռքին, որը չէր ցանկանում նեկտարն ըմպել այլ կերպ, քան միայն սպանվածների գանգերից» (К. Маркс и Ф. Энгельс. Соч., т. 9, стр. 230)։



Կապիտալիստական պրոգրեսը մեծապես խորացրեց նախորդ դարաշրջան-
ների հակահումանիզմը։ Այն է՛լ ավելի ուժեղացրեց տնտեսական ու սոցիալա-
կան անհավասարությունը, աշխատավորների շահագործումը, խորացրեց քա-
ղաքակրթության, գիտության և կուլտուրայի նվաճումների ու մասսաների հո-
գևոր մակարդակի միջև եղած անդունդը։ «Մեր ժամանակներում,— գրել է
Կ. Մարքսը,— կարծես ամեն ինչ հղի է իր հակադրությամբ... Տեխնիկայի հաղ-
թանակները կարծես գնվել են բարոյական դեգրադացիայի գնով։ Թվում է, թե
մարդկությունը որքան ավելի շատ է իրեն ենթարկում բնությանը, այնքան
մարդը դառնում է ուրիշ մարդկանց ստրուկը, և կամ իր իսկ սեփական ստորու-
թյան ստրուկը։ Գիտության մաքուր լույսն անգամ, ըստ երևույթին, չի կարող
փայլել այլ կերպ, քան միայն տգիտության մռայլ ֆոնի վրա։ Մեր բոլոր հայտ-
նագործությունները և մեր ողջ առաջադիմությունը կարծես հանգեցնում է այն
բանին, որ նյութական ուժերը օժտվում են ինտելեկտուալ կյանքով, իսկ իր ին-
տելեկտուալ կյանքից զրկված մարդկային կյանքը նվաստացվում է մինչև հա-
սարակ նյութական ուժի աստիճանի» (նույն տեղը, հ. 12, էջ 4)։
Կապիտալիզմի իմպերիալիստական ստադիայում և հատկապես նրա ար-
դի փուլում այդ հակահումանիզմն ավելի է խորանում նաև հսկայական առա-
ջադիմական հումանիստական պոտենցիալ ունեցող ժամանակակից գիտա-
տեխնիկական հեղափոխության նվաճումների՝ իր շահամոլական օգտագործ-
մամբ։ Շահագործումը, գործազրկությունը, ինֆլյացիան, սոցիալ-դասակար-
գային, ազգային և մյուս հակասությունները կապիտալիստական երկրների
ներսում լրացվում են ողջ մարդկության բախտի ու ապագայի համար աննախ-
ադեպ գլոբալ վտանգներով, որ իրենց մեջ կրում են ռազմա-արդյունաբերական
կոմպլեքսների կողմից մեծապես խթանվող մասսայական ոչնչացման զենքի
հայտնագործումը, սպառազինությունների անզուսպ մրցավազքը։ Որպես այդ
բոլոր պրոցեսների հետևանք, անշեղորեն նեղանում է իմպերիալիզմի տիրա-
պետության սոցիալական բազան, հետզհետե ավելի են արժեզրկվում դրա հո-
գևոր «արժույթները» մասսաների գիտակցության մեջ։
Պատմական պրոցեսի իմացության մարքս-լենինյան տեսության մեջ ան-
խզելիորեն կապակցված հանդես են գալիս կապիտալիզմի տնտեսական ու սո-
ցիալական հարաբերությունների խիստ գիտական վերլուծությունը՝ նրանց ռե-
ալ շարժման ու զարգացման մեջ և սոցիալ-դասակարգային այն ուժերը, որոնց
պայքարի ընթացքում կարող են լուծվել այդ հասարակության անհաշտելի հա-
կասությունները։ Այդ ուսմունքը համակողմանիորեն հիմնավորել է բանվոր
դասակարգի՝ որպես նոր տիպի պրոգրես բերողի, համաշխարհային պատմա-
կան կոչումը, մի ուժի, որն ընդունակ է վերջ դնելու մարդկության նախապատ-
մությանը և նրա առջև բացելու ազատ, կոմունիստական զարգացման անծայ-
րածիր հորիզոնները։
Տիրապետելով մարքս-լենինյան աշխարհայացքին՝ գիտական սոցիալիզմի
ուսմունքին, բանվոր դասակարգն ավելի ու ավելի լրիվ կերպով է իրականաց-
նում, ինչպես մատնանշել է Վ. Ի. Լենինը, մտավոր և բարոյական շարժիչի ու
կապիտալիզմը հեղափոխականորեն սոցիալիզմի վերափոխելու և կոմունիզմ
կառուցելու աշխատանքի ֆիզիկական կատարողի ֆունկցիաները։
Աշխատավորների ազատագրումը ճնշման ու կեղեքման բոլոր ձևերից,
ինչպես ցույց տվեց ՍՍՀՄ-ի ու սոցիալիստական մյուս երկրների փորձը, հիմք
է ծառայում բազմամիլիոնանոց զանգվածների կենսական հարաբերություննե-
րի և շահերի առավել մեծ հումանիզացման համար։
Ստեղծարար այն վիթխարի աշխատանքը, որ սկսել ու գլխավորում են
բանվոր դասակարգն ու նրա կուսակցությունը հասարակական նոր հարաբե-
րությունները, նոր կենսաձևերը հաստատելու և կատարելագործելու նպատա-
կով, (որոնց համար որպես գիտակից կերտողներ հանդես են գալիս ժողովրդա-
կան զանգվածները) հենց այն «մետաղահալ վառարանն է», որտեղ տեղի է
ունենում մարդու նորացման, նրա կյանքի, նրա նոր հայացքների ու արժեքնե-
րի նոր իմաստի ու բովանդակության ձևավորման, անցյալում նրա վերահսկո-
ղությունից դուրս մնացող կենսագործունեության պայմանները գիտական տե-

թյան աճի, հետևաբար, համաշխարհային քաղաքականության վրա նրա ազդեցության ուժեղացման համար առանձնապես հրատապ են դարձել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ընդհանուր օրինաչափությունների և այդ երկրներից յուրաքանչյուրի կոնկրետ-պատմական առանձնահատկությունների հարաբերակցության, ինտերնացիոնալ և ազգային խնդիրների ու շահերի, սոցիալիզմի առաջին երկրի փորձի ընդհանուր նշանակալիի և ազգային առանձնահատուկի ճիշտ գնահատման հարաբերակցության հարցերը։

Մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի արմատական սկզբունքների դոգմատիկական և ռևիզիոնիստական խեղաթյուրումների դեմ մղվող պայքարում, որոնցից չհապաղեցին հակասոցիալիստական նպատակներով օգտվել ներքին հակահեղափոխության մնացորդները մի շարք երկրներում միջազգային իմպերիալիզմի հետ համատեղ (օրինակ, իրադարձությունները Հունգարիայում 1956 թվականին և Չեխոսլովակիայում 1967—68 թթ.), սոցիալիստական երկրների կոմունիստական և բանվորական կուսակցությունները կոլեկտիվ ջանքերով պաշտպանեցին և առավել զարգացրին այդ սկզբունքները։ Նրանք կուտակեցին նոր, արժեքավոր փորձ, որը նպաստում է դրանց հետևողական իրականացմանն իրենց ներքին և միջազգային քաղաքականության մեջ, աշխատավորների շրջանում տարվող ողջ գաղափարական ու դաստիարակչական աշխատանքում։ «Մենք սովորեցինք հաջողությամբ իրականացնել ամենօրյա սովորական աշխատանքը, համբերատարությամբ գտնել այն հարցերի արդարացի լուծումը, որոնք կապիտալիզմի պայմաններում անլուծելի են։ Այդ աշխատանքի ընթացքում մենք սովորեցինք գտնել յուրաքանչյուրի շահերի և ընդհանուր շահերի ճիշտ զուգորդումը, սովորեցինք համագործակցել՝ մեր ճանապարհից վերացնելով այն ամենը, ինչ կարող է խանգարել, կարող է դժվարացնել ընդհանուր առաջընթացը» (Նույն տեղը, հ. 4, էջ 91)։ Այդ բարդ արվեստի կատարելագործման, այդ ունակության աճի հիմնական պայմանը եղավ հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի դասակարգային, ինտերնացիոնալիստական սկզբունքներին, գիտական վերլուծության սկզբունքներին։

Իմպերիալիզմը ծնեց երկրների ու ժողովուրդների տնտեսական, քաղաքական և կուլտուրական զարգացման անհամաչափություն, պահպանեց տնտեսական կացութաձևերի և հասարակական հարաբերությունների ամենից ավելի արխայիկ ձևերը կախյալ ու գաղութային երկրներում, ամեն կերպ պայքարում էր, որ այդ երկրների ժողովուրդները հաղորդակից չդառնան քաղաքակրթության և կուլտուրայի նվաճումներին։

Սոցիալիզմը, հաստատելով նախկինում չտեսնված միջազգային հարաբերություններ, որոնք, վերջին հաշվով, որոշվում են նոր ուղին թևակոխած ժողովուրդների կյանքի տնտեսական հիմքերի ընդհանրությամբ, նրանց միասնական արմատական շահերով, լայն ճանապարհ է բացում օբյեկտիվ օրինաչափությունների գործողության համար, որոնք հաղթահարում են այդ հակամարդասիրական ժառանգությունը։ Այն անշեղորեն մերձեցնում է ժողովուրդներին, ապահովում է համագործակցության երկրների տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման հավասարեցումը ընդհանուր բարձր մակարդակով։ Այդ բանը կանխատեսել էին մարքսիզմի հիմնադիրները։ Եվ սոցիալիզմը հաստատեց այդ կանխատեսումը։ Ազգերի և ազգային կուլտուրաների ավելի ու ավելի արագացող դինամիկ զարգացման և նրանց անշեղ մերձեցման համար հսկայական հնարավորություններ ստեղծող այդ օրինաչափության մարմնավորման պատմականորեն առաջին օրինակը Սովետական Միությունը տվեց։

Գաղափարական ընդհանուր դրվածքը կարևոր, բայց միայն առաջին քայլն է պրակտիկ խնդիրների լուծման ճանապարհին։ Առաջավոր գաղափարները գործողության ուղեցույց են դառնում, երբ դրանք մարմնավորվում են քաղաքական կուրսում, աշխատանքի միջազգային բաժանման ռեալ սիստեմում և կոնկրետ մեխանիզմում, սոցիալիստական պետությունների համագործակցության ուղղությունների տեմպերի ու ձևերի տևական ծրագրերի ու ընթացիկ պլանավորման մեջ, մասսաների շրջանում տարվող ողջ գաղափարա-դաստիա-



րակչական աշխատանքում։ Առաջընթաց շարժումն այդ ճանապարհով ենթադրում էր նաև գիտատեխնիկական հեղափոխության զարգացման տենդենցների, յուրաքանչյուր առանձին վերցրած սոցիալիստական երկրի էկոնոմիկայի, պայմանների ու պահանջմունքների մակարդակի և առանձնահատկության, միջազգային հարաբերությունների վիճակի, համաշխարհային ասպարեզում երկու սիստեմների մրցության հարցերի խիստ գիտական հաշվառումը համագործակցության բովանդակության ու ձևերի մեջ և այլն։ Այստեղից պարզ է նաև, թե որքան մեծ է առաջավոր հեղափոխական տեսության վրա հիմնված քաղաքականության դերն այդ կարևոր գործում, քաղաքական ճիշտ որոշումների ու գործողությունների, ստեղծագործական որոնումների, հասարակական ու տեխնիկական գիտությունների կողմից ավելի խոր վերլուծության ու ներգործուն հանձնարարականների համար։ Սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի կոմպլեքսային ծրագիրը պրոլետարական, սոցիալիստական ինտերնացիոնալիզմն է գործողության մեջ։

Սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման բարդ պրոցեսը դասակարգայինի ու հումանիստականի, դասակարգայինի և համամարդկայինի հարաճուն ներդաշնակումն է։ Այդ պրոցեսում է տեղի ունենում աշխատավորների ողջ զանգվածի արմատական կենսական շահերի առավել լրիվ զուգադիպումը բանվոր դասակարգի շահերի հետ, աշխատավորների առջև բացվում են նյութական բարեկեցության և կուլտուրայի ընդհանուր աճի ու դեմոկրատիայի կատարելագործման պայմաններում շահագործումից զերծ աշխատանքի, առաջավոր գիտության և կուլտուրայի մեծ բարիքներից օգտվելու սոցիալականորեն հավասար հնարավորություններ։ Եվ որպես դրա արդյունք մարդկանց հոգևոր աշխարհում և արժույթներում, անկախ նրանց սոցիալական ու ազգային պատկանելությունից, հասակից, սեռից, գործունեության տեսակից ու սեռից, ձևավորվում են ընդհանուր ինտերնացիոնալ սոցիալիստական հատկանիշներ։ Ազգերի ու ժողովուրդների կյանքում, որոնք միավորված են բազմազգ պետության շրջանակներում, ունեն պատմական ընդհանուր բախտ, անցել են տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման ընդհանուր ուղի, հաստատվում է խոր միասնություն, ձևավորվում է նրանց միասնական պատկերը։ Այն հասարակության բոլոր սոցիալ-քաղաքական, ազգային և այլ խմբերը ցեմենտում է մեկ անքակտելի ամբողջության մեջ։

Այդ պրոցեսի գիտական ընդհանրացումը հանդիսացավ գաղափարական-տեսական և քաղաքական-պատմական նշանակություն ունեցող ՍՄԿԿ XXIV համագումարի հետևությունը, որը կոնկրետացվեց XXV համագումարում։ ՍՍՀՄ-ում ձևավորվել ու զարգանում է մարդկանց հանրության պատմական նոր տիպ՝ սովետական ժողովուրդը։ Նպատակ չունենալով այդ երևույթի հանգամանալից բնութագիրը տալու, ուշադրություն դարձնենք միայն այն բանին, որ այդ հանրությունը, որը ստեղծվել է հասարակական կյանքում մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների, ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության իրագործման շնորհիվ, բնավ իրենով չի փոխարինում սովետական հասարակության ազգային տարբերությունները, բազմազգ բնույթը։ Այն արտահայտում է սովետական հասարակության բոլոր կառուցվածքային բաղադրամասերի (դասակարգային ու մյուս սոցիալական, խմբային, էթնիկական) այն առանձնահատկությունները, որոնք ձևավորվել են սոցիալիզմի ու նրա զարգացման պայմաններում և ընդհանուր են բոլոր այդ բաղադրամասերի համար, և ուստի դրանցից յուրաքանչյուրը ներկայանում է որպես երկրի ողջ բնակչությունն ընդգրկող տվյալ հանրության օրգանական մասը։ Այլ կերպ ասած, սովետական ժողովուրդը ոչ թե էթնիկական, այլ սոցիալ-դասակարգային հանրություն է, որի գոյավորումն ընթացել է հասարակական կյանքի ինտերնացիոնալացման սոցիալիստական տիպի պայմաններում, որը ոչ թե թշնամացնում է ազգերին ու ժողովուրդներին, ինչպես դա բնորոշ է կապիտալիզմին, այլ մերձեցնում է նրանց՝ միասնական արմատական շահերի, տնտեսական ու սոցիալ-քաղաքական հարաբերությունների, ընդհանուր գաղափարախոսության և բարոյականության հիմքի վրա։

Թվում է, որ պատմական նոր հանրության առաջացման վերաբերյալ այդ

մաններում աշխատանքային գործունեության բովանդակության, դրա կազմակերպման և կուլտուրայի նկատմամբ, սահմանված են սոցիալիստական տնտեսության առավելությունների հետ դրա նվաճումների համատեղման խնդիրները։ Կուսակցության համագումարների նյութերում առաջադրված են այնպիսի գաղափարներ, որոնք արտացոլում են աճած պահանջները պլանավորման ու կառավարման որակի նկատմամբ՝ նյութական արտադրության ոլորտում, սոցիալական և կուլտուրական գործունեության նկատմամբ։ Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հաշվեկշռված զարգացման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման, էկոնոմիկայի կառուցվածքի որակական բարելավման, արտադրաոլորտում առավել ինտենսիվ մեթոդներ կիրառելու, դրա վերջնական արդյունքները բոլոր մակարդակներով գնահատելու գաղափարներն արժեքավոր ներդրում են կոմունիստական շինարարության ընդհանուր տեսության բնագավառում։

Նոր տիպի կուսակցության մասին ուսմունքի և սոցիալիստական պետության տեսության հետագա զարգացման համար հսկայական նշանակություն ունեն կոմունիստական կուսակցությունն ամբողջ ժողովրդի կուսակցություն դառնալու, իսկ պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը համաժողովրդական պետության վերածվելու վերաբերյալ հետևությունները։ Միևնույն ժամանակ, կուսակցության և պետության, սոցիալիստական հասարակարգի քաղաքական կազմակերպման ողջ ոլորտի որակապես նոր այդ վիճակը նրա հասունության փուլում մեկնաբանվում է խիստ դիալեկտիկորեն։ Ամբողջ ժողովրդի կուսակցությունը և համաժողովրդական պետությունը ո՛չ միայն չեն կորցնում իրենց դասակարգային էությունը, այլ իրենց քաղաքականության, համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող ողջ գործունեության մեջ ավելի լրիվ ձևով են արտահայտում հասարակության առաջատար ուժի՝ բանվոր դասակարգի շահերն ու իդեալները համաժողովրդական շահերի ու իդեալների վերածվելու փաստը։

Զարգացած սոցիալիզմի փուլում բարդանում են հասարակական պրոցեսները, ստեղծարար աշխատանքը կատարվում է վիթխարի մասշտաբներով, հարստանում են հասարակական կապերն ու հարաբերությունները, ավելի ու ավելի ինտենսիվ է դառնում գործունեության ու նրա արդյունքների փոխանակումն ամենալայն մասսաների կողմից։ Դա օբյեկտիվորեն բարձրացնում է գիտականորեն ստուգված քաղաքական կուրսի դերը, որը կոչված է հաշվի առնելու հասարակական օրգանիզմի դինամիկ կառուցվածքը, կոմունիստական շինարարության ընդհանուր խնդիրների դիրքերից կոորդինացնելու և միասնական, ներդաշնակ դարձնելու բոլոր դասակարգերի ու սոցիալական մյուս խմբերի շահերը, միլիոնավոր մարդկանց վիթխարի կերպով աճած ստեղծագործական եռանդը։

Սոցիալիստական հասարակարգում, որի զարգացումը հիմնված է հասարակական զարգացման օրենքների գիտական իմացության վրա և տեղի է ունենում գիտակցված, պլանաչափ գործունեության ընթացքում, վիթխարի չափով աճում է ընդհանրապես սուբյեկտիվ գործոնի և, մասնավորապես, գիտա-տեսական գիտակցության ազդեցությունը կառավարման վրա։ Մարքս-լենինյան գաղափարախոսությունը՝ որպես կոմունիստական կուսակցության քաղաքականության տեսական հիմք, որոշում է կառավարման կարևորագույն ուղղություններն ու նպատակները, դրա միջոցներն ու մեթոդները, ոլորտների ու մակարդակների փոխգործողության սկզբունքները։ Սոցիալիստական հասարակարգի զարգացմանը զուգընթաց անշեղորեն ընդլայնվում են կառավարման սուբյեկտի «ծավալն» ու սահմանները, սուբյեկտ, որը հետզհետե ավելի ու ավելի մասսայական է դառնում, ընդգրկելով աշխատավորների նորանոր խավեր։

Սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացման, հասարակության, պետության կառավարման ոլորտներում աշխատավորների ավելի լայն ներգրավման խնդիրների հետ սերտորեն կապակցված կուսակցական համագումարներում արծարծվում են սովետական հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա մարքս-լենինյան տեսության ազդեցությունն ավելի ուժեղացնելու, հասարակական զարգացման տեսական պրոբլեմներն առավել ակտիվո-



րեն մշակելու, մասսաների շրջանում գաղափարա-դաստիարակչական աշխատանքը ուժեղացնելու հարցերը։ Եվ դա հասկանալի է, քանի որ կառավարման սոցիալիստական եղանակը հենվում է աշխատավորների հարաճուն գիտակցականության և կազմակերպվածության վրա։

Սոցիալիստական գաղափարախոսությունը շարունակ ներառում է առաջավոր գիտության և հասարակական պրակտիկայի նվաճումները, որոնք նրան հնարավորություն են ընձեռում գիտական որոնումների ստրատեգիան ճշտորեն կողմնորոշել գիտելիքների տարբեր ճյուղերում։

Ելնելով կոմունիստական ֆորմացիայի զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների պահանջներից և հաշվի առնելով հասունացած հասարակական պահանջմունքները, ՍՄԿԿ XXV համագումարը որոշեց տնտեսական և կուլտուրական շինարարության, գաղափարական և դաստիարակչական աշխատանքի կարևորագույն խնդիրները և դրանց հետ սերտորեն կապված՝ գիտության զարգացման գլխավոր ուղղությունները։ Ճշտելով երկրի աճած պահանջմունքը տեսության հետագա ստեղծագործական մշակման բնագավառում, ինչպես հիմնարար, այնպես էլ կիրառական բնույթի բեղմնավոր հետազոտությունների համար նոր հնարավորությունները լրիվ չափով օգտագործելու անհրաժեշտությունը, համագումարն առանձնապես շեշտեց այնպիսի պրոբլեմների նշանակությունը, ինչպիսիք են.

— արտադրության համակողմանի զարգացման ու դրա կառավարման արդյունավետության նշանակալի բարձրացման եղանակները.

— սովետական հասարակարգի զարգացման նկրտումը զարգացած սոցիալիզմի փուլում. փոփոխություններն աշխատանքի բնույթի ու բովանդակության մեջ, հասարակության սոցիալական կառուցվածքում.

— ըստ աշխատանքի բաշխումը կատարելագործելու, նյութական և բարոյական խթանների ավելի օրգանական զուգակցման մեթոդների՝ տարբեր գիտությունների ներկայացուցիչների ջանքերով սոցիալիստական ապրելակերպի և կուլտուրայի զարգացման հարցերի կոմպլեքսային մշակումը.

— սովետական պետականության զարգացման պրոցեսների ու պրոբլեմների, դաստիարակչական, գաղափարական աշխատանքի ձևերի ու մեթոդների հետագա ուսումնասիրումը.

— շրջակա միջավայրի և ազգաբնակչության, բնությունից օգտվելու սոցիալիստական եղանակի բարելավման պրոբլեմները. արդյունավետ դեմոգրաֆիական քաղաքականության մշակումը.

— համաշխարհային զարգացման և միջազգային հարաբերությունների, հեղափոխական պրոցեսի, դրա զանազան հոսանքների փոխազդեցության և միասնության, դեմոկրատիայի համար մղվող պայքարի հետ սոցիալիզմի համար մղվող պայքարի հարաբերակցության, արդիականության գլխավոր հարցում՝ պատերազմի ու խաղաղության հարցում ուժերի հակամարտության արմատական պրոբլեմների հետազոտումը։

«Ակնբախ է, որ մեր հասարակական գիտության առջև կանգնած հարցերը կարող են լուծվել միայն կյանքի հետ նրա ամենասերտ կապի պայմանով,— նշվում է ՍՄԿԿ XXV համագումարին Կենտրոնական կոմիտեի տված հաշվետու զեկուցման մեջ։— Սխոլաստիկական տեսականացումը սոսկ կարող է արգելակել մեր առաջընթաց շարժումը։ Միայն պրակտիկայի հետ ունեցած կապը կարող է բարձրացնել գիտության արդյունավետությունը։ Իսկ դա այսօր կենտրոնական պրոբլեմներից մեկն է» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը..., էջ 120)։

Գիտության և սոցիալիստական հասարակության ողջ հոգևոր կյանքի քաղաքական հստակ կողմնորոշումը, որը հնարավոր է միայն մարքս-լենինյան տեսության դիրքերից, իր հերթին վերջինիս համար ստեղծում է օբյեկտիվ գիտելիքի ավելի ու ավելի լայն բազա և դրանով բարձրացնում նրա ներգործունությունը։ Այսօր առանձնապես այժմեական են Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, որ բանվոր դասակարգի գաղափարախոսությունը, գիտական սոցիալիզմը «... ենթարկվում է գաղափարախոսության ծագման, զարգացման ու ամրացման ընդհանուր պայմաններին, այսինքն՝ հիմնվում է մարդկային գի-

տելիքի ամբողջ նյութի վրա, ենթադրում է գիտության բարձր զարգացում, պահանջում է գիտական աշխատանք և այլն» (ԵԼժ, հ. 6, էջ 450)։

Մարքս-լենինյան կուսակցությունը գիտական գաղափարախոսության պրոբլեմների մշակմանը մոտենում է՝ խստորեն հաշվի առնելով նրա կողմից իրականության արտացոլման առանձնահատկությունը, նրա կառուցվածքի և ֆունկցիաների առանձնահատկությունը, կոնկրետ հասարակական գիտությունների հետ նրա հարաբերակցության բնույթը։

Մարքսիզմ-լենինիզմը՝ որպես գիտություն հասարակության հեղափոխական վերափոխման և կոմունիզմի կառուցման ուղիների վերաբերյալ, ներկայանում է բբրև շրջակա աշխարհի, հասարակության ու նրա զարգացման օրենքների մասին տեսական գիտելիքների մի ամբողջական սիստեմ։ Բայց այդ գիտելիքները գաղափարախոսության մեջ տրված են ոչ թե որպես օբյեկտիվ կապերի ու հարաբերությունների հասարակ արձանագրում՝ անկախ այն բանից, թե որ դասակարգին են դրանք «հասցեագրված» և ինչ է անելու նա։ Դա մի առանձնահատուկ գիտություն է, որը համապատասխանելով օբյեկտիվության ամենախիստ չափանիշներին, իր ուսմունքների, տեսությունների, հետևությունների բուն կառուցվածքում համաշխարհային-պատմական առաջադիմության օբյեկտիվ ճշմարտությունը օրգանապես սինթեզում է նրա սուբյեկտի՝ միջազգային բանվոր դասակարգի գործունեության հետ, գիտականորեն հիմնավորված կոմունիստական իդեալի դիրքերից որոշում այդ գործունեության նպատակները, միջոցները և մեթոդները։

***

ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԸ, որպես գիտական գաղափարախոսություն և հեղափոխական գիտություն, որը ուղղություն է տալիս մեր ժամանակի ամենաառաջավոր դասակարգի պայքարին, հանդես է գալիս նաև որպես համամարդկային առաջընթացի հզոր զենք։ Զարգացած սոցիալիզմը ՍՍՀՄ-ում, համաշխարհային սոցիալիստական սիստեմը, լինելով այդ ուսմունքի ռեալ մարմնավորումը, ողջ աշխարհի աշխատավորներին, պրոգրեսիվ մարդկությանը տեսանելիորեն ու համոզիչ ցույց են տալիս դեպի ազատ աշխատանքի, արդարության և հավասարության, խաղաղության և ժողովուրդների եղբայրության հասարակարգը տանող միակ հնարավոր և ճշմարիտ ուղին։

# ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

## ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ՍՈՑԻԱԼ-ՏՆՏԵՍԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳԼԽԱՎՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԸ

Ս. Լ. ԹՈՒՄԱՆՅԱՆ
Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի պետպլանի նախագահ

ՀԱՋՈՂՈՒԹՅԱՄԲ ԱՎԱՐՏՎԵՑ 1976 թվականը, որը նշանավորվեց այնպիսի աչքի ընկնող իրադարձությամբ, ինչպիսին ՍՄԿԿ XXV համագումարն էր։ Կուսակցության համագումարը մշակեց երկրի ժողովրդական տնտեսության հետագա դինամիկ զարգացման, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման և սոցիալիստական ապրելակերպի զարգացման ընդարձակ սոցիալ-տնտեսական ծրագիրը։

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները հաջողությամբ կատարելու, տասներորդ հնգամյակը արդյունավետության և որակի հնգամյակ դարձնելու համաժողովրդական պայքարը իր վառ արտահայտությունն է գտել ինչպես ամբողջ երկրի, այնպես էլ մեր հանրապետության աշխատավորների ծավալած սոցիալիստական մրցության մեջ, որը նպատակադրում է արտադրանքի թողարկումն ավելացնելու, նրա որակը բարձրացնելու և ինքնարժեքն իջեցնելու համար հայտնաբերել ու գործի դնել ներքին բոլոր ռեզերվները։

Հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հարվածային աշխատանքն ապահովեց տասներորդ հնգամյակի առաջին տարվա պլանային առաջադրանքների կատարումն ու գերակատարումը արտադրության ծավալի և արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների թողարկման, գյուղատնտեսական մթերքների (հացահատիկի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի, խորդենու, կարտոֆիլի, բանջարեղենի, պտուղների, մսի, կաթի), մթերումների, տրանսպորտի և կապի զարգացման, ինչպես նաև մանրածախ ապրանքաշրջանառության, բնակչության կենցաղային սպասարկման, մի շարք այլ բնագավառներում, որոնցով պայմանավորվում են էկոնոմիկայի զարգացումը և բնակչության կենսամակարդակի բարձրացումը։

Արդյունաբերական արտադրության ծավալի աճն անցած տարում կազմել է 8,8 տոկոս՝ պլանով նախատեսված 7,3-ի դիմաց։ Պետական որականիշ ունեցող արտադրանքի տեսակարար կշիռը 1975 թ. 6,5 տոկոսից բարձրացավ մինչև 8 տոկոսի։ Հանրապետության էկոնոմիկայի զարգացման ապա-

դրանց նյութատեխնիկական բազայի նշանակալի ամրապնդումով: Հանրապետության ժողովրդական տնտեսության հիմնական ֆոնդերը, 1975 թ. համեմատությամբ, կավելանան 52 տոկոսով, այդ թվում արտադրական ֆոնդերը՝ 60 տոկոսով:

Մեր հանրապետության հետագա սոցիալ-տնտեսական զարգացման ընդարձակ ծրագրի իրականացումը մեծապես պայմանավորված է նրանով, թե ինչպիսի հաջողությամբ կվերացվեն շինարարության կազմակերպման գործում եղած լուրջ թերությունները, որոնց հետևանքով անցյալ տարիներին կապիտալ շինարարության պլանների կատարումը ետ էր մնում: Խոսքը վերաբերում է այնպիսի կոնկրետ միջոցների կոմպլեքսի իրականացմանը, որոնք կապահովեն տարեկան ավելի քան մեկ միլիարդ ռուբլի կապիտալ ներդրումների իրացումը, հնարավորություն կընձեռեն 1980 թ. մոտերքին չավարտված շինարարության ծավալը կրճատել գրեթե 50 տոկոսով և միջոցները ներդնել առաջին հերթին թողարկվող օբյեկտների վրա, կնպաստեն գործող ձեռնարկությունների տեխնիկական մակարդակի բարձրացմանը, նյութական միջոցների ռացիոնալ օգտագործմանը, արտադրական կարողությունների գործարկման ու յուրացման արագացմանը և, վերջին հաշվով, կապիտալ ներդրումների ու արտադրական հիմնական ֆոնդերի օգտագործման արդյունավետության բարձրացմանը:

Նախատեսվում է շինարարությունը փոխադրել մեքենայացված պրոցեսի՝ շենքերն ու կառույցները հավաքել արդյունաբերական եղանակով պատրաստված կառուցվածքներից, դետալներից և հանգույցներից: Այդ հարցերը լուծելու համար նախատեսվում է ամրապնդել շինարարության բազան: Շինարարական կազմակերպությունների արտադրական կարողությունները 1975 թ. 650 մլն ռուբլուց կհասնեն մինչև 800 մլն. ռուբլու, որը զգալիորեն կգերազանցի հնգամյա պլանով նախատեսված շինարարական-մոնտաժային աշխատանքների տարեկան առավելագույն ծավալը:

Հատուկ ուշադրություն է դարձվում անհրաժեշտ կարողությունների ստեղծմանը ժողովրդական տնտեսության այն ճյուղերում շինարարություն իրականացնող շինկազմակերպություններում, որոնցում կապիտալ ներդրումներն աճում են հանրապետության միջինը գերազանցող տեմպերով: Դրանց թվին դասվում են նախ և առաջ ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ճյուղերը՝ թեթև և սննդի արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը: Կապիտալ ներդրումները կավելանան նաև ոչ արտադրական ոլորտի ճյուղերում՝ լուսավորության, կուլտուրայի, կոմունալ տնտեսության և այլն:

Մասսայական բնակարանային շինարարության մեջ տեխնիկական առաջընթացի գլխավոր ուղղությունը խոշոր պանելային տնաշինարարությունն է, որի կարողությունը Աբովյանի խոշոր պանելային գործարանի շահագործմամբ արդեն 1977 թվականին կկրկնապատկվի, իսկ 1980-ին կավելանա ավելի քան 5 անգամ: Խոշոր պանելային տնաշինական նոր գործարաններ պետք է կառուցվեն Երևանում, Լենինականում, Կիրովականում, Մարտունիում:

Շինարարության ինդուստրացումը, առաջադիմական կոնստրուկցիաների ու նյութերի օգտագործումը, ինչպես նաև շինարարությունում աշխատանքի կազմակերպման կատարելագործումը, շինարարության ծավալների կատարումն ապահովելու հետ միասին, ռեալ հնարավորություն են ստեղծում բարելավելու որակը, իջեցնելու աշխատանքի ծախսերը և շինարարական-մոնտաժային աշխատանքների ինքնարժեքը:

Կապիտալ շինարարության պլանների կատարմանը և արտադրական կարողությունների գործարկմանը կնպաստեն շինարարական ինդուստրիայի կարողությունների ավելի լիակատար օգտագործումը, շինարարության և բրիգադային կապալի ժամանակակից մեթոդների լայն արմատավորումը, անցումը կապալային շինարարական-մոնտաժային կազմակերպությունների գործունեության գնահատմանը՝ լիովին ավարտված օբյեկտների համար:

Հանրապետության էկոնոմիկայի զարգացման որակապես նոր փուլի կուրսի իրականացման հուսալի երաշխիքն են ՍՄԿԿ XXV համագումարի հաստատած ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական ուղղությունները և ՍՄԿԿ Կենտկոմի ու ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1975 թ. ապրիլի 16-ի որոշումը «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին»: Այդ հիմնարար փաստաթղթերում որոշված են հանրապետության արտադրուժերի ավելի արագընթաց զարգացման և այդ նպատակի համար անհրաժեշտ նյութատեխնիկական բազայի ստեղծման ուղիները:



Տասներորդ հնգամյակի լարված, բայց միանգամայն ռեալ ստեղծարար ծրագրի կենսագործման նպատակով միջոցառումներ են նախատեսվում՝ վերացնելու ժողովրդական տնտեսության առանձին օղակներում դեռևս գոյություն ունեցող թերությունները, տնտեսական և կուլտուրական շինարարության կազմակերպման գործում ըստ ամենայնի ապահովելու գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, լրիվ ծավալով, բարձր որակով և նվազագույն ծախսումներով կատարելու պլանային առաջադրանքները յուրաքանչյուր կոլեկտիվում:

Անհրաժեշտ է, որ մեր հանրապետությունում առևտրի, կենցաղսպասարկման, բնակարանային-կոմունալ տնտեսության, առողջապահության և բնակչության կենսապայմանները բնորոշող մյուս ճյուղերի նյութատեխնիկական բազան ավելի լրիվ չափով ի սպաս դրվի այդ բնագավառների որակական ցուցանիշների բարձրացմանը:

Մեր հանրապետության աշխատավորների, ինչպես և սովետական ամբողջ ժողովրդի համար գործունեության մարտական ծրագիր են ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումի որոշումները: Դրանք այժմ դրված են կազմակերպական և դաստիարակչական այն աշխատանքի հիմքում, որը նպատակամղված է կուսակցության XXV համագումարի կանխագծումների հաջող կատարմանը, աշխատանքի արդյունավետության և որակի բարելավման համար շարժման նոր վերելքին:

Հաջողությամբ ավարտելով տասներորդ հնգամյակի մեկնարկային տարին, հանրապետության աշխատավորները քաղաքական ակտիվության և ստեղծագործական ոգևորության պայմաններում նոր ուժով սոցիալիստական մրցություն են ծավալել Մեծ Հոկտեմբերի 60-ամյակը արժանավայել դիմավորելու համար:

# ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ԵՂԱՆԱԿՆԵՐԸ

**Վ. Կ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու

ԺՈՂՈՎՐԴԻ ՆՅՈՒԹԱԿԱՆ բարեկեցության և կյանքի կուլտուրական մակարդակի վերելքի վճռական գործոնը հանրային արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացումն է։

«Երկրի առջև կանգնած տնտեսական և սոցիալական բազմազան խնդիրները հաջողությամբ լուծելու համար,— ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում,— այլ ուղի չկա, բացի աշխատանքի արտադրողականության արագ աճից, ամբողջ հանրային արտադրության արդյունավետության խիստ բարձրացումից։ Շեշտը արդյունավետության վրա դնելը, և այդ մասին հարկ է կրկին ու կրկին ասել, մեր ամբողջ տնտեսական ստրատեգիայի կարևորագույն բաղկացուցիչ մասն է» (ՍՄԿԿ ԿԿ հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 70)։

Տակավին սովետական իշխանության արշալույսին Վ. Ի. Լենինը արդյունավետության և որակի պրոբլեմը համարել է անհրաժեշտ գործոն նոր հասարակարգի հաղթանակի, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման համար։ Սակայն միայն զարգացման արդի փուլում այն ողջ ուժով ծառացել է մեր առջև, քանզի դրա լուծման անհրաժեշտությունն ու հնարավորությունը միացվել են սոցիալիստական տնտեսության առավելությունների և գիտատեխնիկական հեղաշրջման նվաճումների հետ։

Տնտեսական արդյունավետության քանակական չափանիշն արդյունքի և դրա համար անհրաժեշտ ծախսերի հարաբերակցությունն է։ Հասարակական արտադրության արդյունավետության բարձրացման խնդիրն է՝ նվազագույն ծախսերով ստանալ առավելագույն արդյունքներ։

Տվյալ պրոբլեմի էությունն այն է,— նկատել է Լ. Ի. Բրեժնևը,— որ աշխատանքային, նյութական և ֆինանսական ծախսումների յուրաքանչյուր միավորի հաշվով էապես մեծացվի արտադրության և ազգային եկամտի ծավալը։ (տե՛ս ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, «Հայաստան» հրատ., 1971 թ., էջ 72—73)։

Արտադրության արդյունավետության ցուցանիշներն են աշխատանքի արտադրողականությունը, նյութատարությունը և ֆոնդահատույցը։ Աշխատանքի արտադրողականությունը որոշվում է բազմաթիվ բարդ հանգամանքներով, հատկապես՝ գիտության ու տեխնիկայի նվաճումներով և արտադրության մեջ դրանց կիրառման չափերով, աշխատավորների հանրակրթական և մասնագիտական պատրաստության մակարդակով, աշխատանքի և արտադրության կազմակերպմամբ, բնական ռեսուրսների ռացիոնալ օգտագործմամբ, բարոյական խթաններով և նյութական շահագրգռվածությամբ, արտադրության ճյուղային կառուցվածքով։ Ուստի, աշխատանքի արտադրողականության փոփոխությունն այդ գործոնների ամբողջ կոմպլեքսի ազդեցության արդյունքն է։



ՄԵՐ ԵՐԿԻՐԸ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐՏԱԴՐՈՂԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԱՃՈՒՄ մեծ հաջողությունների է հասել։ 1951—1974 թթ. ՍՍՀՄ արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության աճի միջին տարեկան տեմպը կազմում է 5,2 տոկոս, որ, գրեթե, երկու անգամ ավելի է, քան ԱՄՆ-ում։

1976—1980 թթ. հասարակական աշխատանքի արտադրողականությունը մեր երկրում կաճի 27 տոկոսով, որը կապահովի 26 մլն աշխատավորների աշխատանքի տնտեսումը։ Աշխատանքի արտադրողականության հաշվին շուրջ 90 տոկոսով կավելանա արդյունաբերական արտադրանքը, կապահովվի գյուղատնտեսական արտադրանքի, շինարարական-մոնտաժային աշխատանքների ամբողջ աճը։ Անհրաժեշտ է շեշտել, որ արտադրության մասշտաբների աճի մեծացումը բարձրացնում է աշխատանքի արտադրողականության յուրաքանչյուր տոկոսի նշանակությունը։ Այսպես, առաջին հնգամյակում աշխատանքի արտադրողականության մեկ տոկոս ավելացումը տարեկան տալիս էր արդյունաբերական արտադրանքի 31 մլն ռուբլու (գների նոր մասշտաբով), իսկ ընթացիկ հնգամյակում՝ ավելի քան 5 մլրդ ռուբլու աճ։ 1975 թ. աշխատանքի արտադրողականությունը Հայկական ՍՍՀ արդյունաբերության մեջ, 1940 թ. համեմատությամբ, աճեց 5,2 անգամ, որն անհամեմատ ցածր է, քան ՍՍՀՄ-ում՝ ամբողջությամբ վերցրած։ Հայաստանում արդյունաբերական ցածր արտադրանքի պատճառն աշխատանքի արտադրողականության նվազ աճն է։ Այսպես, եթե ութերորդ հնգամյակում աշխատանքի արտադրողականության աճի հաշվին ՍՍՀՄ-ում ստացվել է արդյունաբերական արտադրանքի 73 տոկոսը, իսկ իններորդ հնգամյակում՝ 84 տոկոսը, ապա Հայաստանում, դրանք կազմում են, համապատասխանաբար՝ 56 և 68 տոկոս։ Ստեղծված իրավիճակի պատճառները շատ են, որոնցից հարկ է նշել առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրման դանդաղ յուրացումը, արտադրական հզորությունների ոչ լրիվ օգտագործումը, մեծ քանակի հնացած սարքավորումների առկայությունը, օժանդակ և ձեռքի աշխատանքով զբաղված բանվորների մեծ տեսակարար կշիռը, բանվորական ուժի հոսունությունը, թողարկվող արտադրանքի ոչ կայուն բարձր որակը և այլն։

Փաստերը վկայում են, որ պետական կապիտալ ներդրումների պլանները 1971—1975 թթ. հանրապետությունում կատարվել են 93,2, այդ թվում շինարարական-մոնտաժային աշխատանքներինը՝ 98,3 տոկոսով։ Անավարտ շինարարությունն այդ ժամանակաշրջանում կազմել է կապիտալ ներդրումների տարեկան ծավալի 115—120 տոկոսը։ Լրիվ նախագծային հզորությամբ հանձնված շինարարական օբյեկտների կառուցման տևողության ուսումնասիրությունը ցույց տվեց, որ առանձին դեպքերում հանրապետությունում դրանց նորմատիվ ժամկետները գերազանցում են 4 և ավելի անգամ։ Օրինակ, Ագարակի պղնձա-մոլիբդենային կոմբինատի շինարարությունը տևել է 12, իսկ Տաթևգէսինը՝ 10 տարի։ Ըստ նախագծի, Չարենցավանի գործիքաշինական գործարանի կառուցումը նախատեսված էր ավարտել 11 տարի 9 ամսում, այն դեպքում, երբ նորմատիվ ժամկետը կազմում էր 48 ամիս։ Իրականում շինարարության դանդաղ տեմպերի պատճառով նշված ժամկետը ևս երկարաձգվեց։ Լենինականի ֆրեզերահաստոցների գործարանի շինարարության նախագծային ժամկետը 11 տարի է, իսկ նորմատիվը՝ 5,5, սակայն 10 տարում (1958—1967 թթ.) յուրացվել է նախահաշվային արժեքի ընդամենը 50,2 տոկոսը, հետևաբար, նույնքան էլ կպահանջվի ավարտի համար։

Մեր հանրապետությունն ապակյա տարայի սուր կարիք ունի, իսկ Հոկտեմբերյանում արդեն տասնմեկերորդ տարին է, ինչ կառուցվում է ապակյա տարայի գործարան։ Տաս տարում յուրացվել է կապիտալ ներդրումների միայն կեսը։ Նախահաշվային մնացորդը 1976 թ. հունվարի 1-ին կազմում էր 8,2 մլն ռուբլի։ Հրազդանի լեռնա-քիմիական կոմբինատի շինարարությունն սկսվել է 1960 թ., իսկ ավարտն անհայտ է։ Այսպիսով, մեզ մոտ հաճախ շինարարության նախագծային ժամկետները նշանակալիորեն գերազանցում են նորմատիվայիններին, իսկ փաստականը՝ նախագծայիններին։ Դա կապված է, առաջին հերթին, կառույցների քանակի ավելացման, անբավարար ֆինանսավորման հետ

և այլն: Եթե Հայաստանում 1971 թ. կար արտադրական նշանակության 1.481 կառուցվող օբյեկտ, ապա 1973 թ. դրանց թիվը հասավ 1.885-ի, ընդ որում, յուրաքանչյուր կառույցի հատկացումները կրճատվեցին 408-ից մինչև 321 հազար ռուբլի: Հանրապետության շատ ձեռնարկություններում արտադրական հզորություններն օգտագործվում են 70—80 տոկոսով: «Հայէլեկտրամաշ» արտադրամիավորումում մետաղահատ հաստոցների գրեթե 25 տոկոսը 20 տարուց ավելի հասակ ունեն, իսկ 50 տոկոսը՝ 10-ից 20 տարի: Համարյա նույն վիճակում են նաև դարբնոցամամլիչային, ձուլման և այլ սարքավորումները:

Մինչդեռ քիչ չեն այնպիսի օրինակները, երբ արդյունաբերական ձեռնարկությունների կառուցման պլանները կատարվում են ժամկետից շուտ, յուրացվում են նախագծային հզորությունները, նորացվում տեխնիկան և տեխնոլոգիական պրոցեսները: Սահմանված ժամկետից երկու ամիս շուտ շահագործման հանձնվեց Հրազդանի ՊՇԷԿ-ի չորրորդ էներգաբլոկը՝ 210 հազար կվտ հզորությամբ. դրանով իսկ ժամկետից շուտ ավարտվեց 1.100 հազար կվտ սահմանված կարողության այդ կարևորագույն ժողովրդա-տնտեսական օբյեկտի շինարարությունը: Հաջողությամբ յուրացվեցին Կիրովականի քիմիական թելի գործարանի կարողությունները, ժամկետից շուտ գործարկվեց ացետատային մետաքսի արտադրությունը: «Հայէլեկտրալույս» արտադրամիավորման ձեռնարկություններում ժամանակակից տեխնիկա և տեխնոլոգիա ներդնելու շնորհիվ էլեկտրալուսավորիչ լամպերի փաստական թողարկումը 3 անգամ գերազանցեց նախատեսված կարողությունը: Անցյալ հնգամյակի վերջին Երևանի քիմիական ռեակտիվների գործարանի նախագծված կարողությունը գերազանցվեց 3,1 անգամ (առանց տեղամասերի ավելացման և լրացուցիչ կապիտալ ներդրումների): Ըստ նախագծի, գործարանում պետք է աշխատեին 1.264 բանվորներ և թողարկեին 8,7 մլն ռուբլու արտադրանք, իսկ իրականում ներգրավված են 1.004 մարդ և թողարկվում է 26,5 մլն ռուբլու արտադրանք:

ՏԱՍՆԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿՈՒՄ Հայաստանում ժողովրդական տնտեսության անհետաձգելի խնդիրների լուծման և թերությունների վերացման համար բոլոր ուժերի մոբիլիզացումը կապահովի աշխատանքի արտադրողականության բարձրացման 26,4 տոկոս և դրա հաշվին կստացվի ազգային եկամտի աճի 64 տոկոսը: Արտադրության արդյունավետության կարևոր ցուցանիշներից է նյութատարությունը: Զարգացած սոցիալիստական հասարակության հսկայական, արագ ու անընդհատ աճող արդյունաբերական կարողությունը պահանջում է ավելի ու ավելի աճող նյութական ռեսուրսներ: Արտադրանյութերի ու միջոցների արտադրողաբար և խնայողաբար օգտագործումը նպաստում է մարդկանց բազմակողմանի պահանջների առավել բավարարմանը: Այստեղից էլ մեկ միավոր արտադրանքի նյութատարության աստիճանական նվազեցման նշանակությունը: ՍՄԿԿ XXV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Էներգիայի և հումքի բնագավառում երկրի պահանջմունքներն անընդհատ աճում են, իսկ դրանց արտադրությունն ավելի ու ավելի թանկ է նստում: Հետևաբար, կապիտալ ներդրումները չափից ավելի չմեծացնելու համար հարկավոր է հասնել ռեսուրսների է՛լ ավելի ռացիոնալ օգտագործման, այդ թվում՝ արտադրանքի նյութատարությունը կրճատելու, է՛լ ավելի էժան և արդյունավետ նյութեր կիրառելու, ինչպես նաև դրանք խնայողաբար ծախսելու հաշվին» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, էջ 70—71):

Արդի պայմաններում թողարկվող արտադրանքի նյութատարության նվազեցման յուրաքանչյուր տոկոսը համարժեք է ազգային եկամտի 4—5 մլրդ ռուբլու աճին:

Անհրաժեշտ է տարբերել ընդհանուր, հարաբերական և տեսակարար նյութատարությունները: Ընդհանուր նյութատարությունը ենթադրում է ժողովրդական տնտեսության համախառն արտադրանքի թողարկման կամ նրա մի մարզի՝ արդյունաբերության վրա ծախսված նյութերը: Բնական է, որ հասարակական հարաճուն պահանջմունքները բավարարելու համար անհրաժեշտ է



աշխատանքի տարբեր առարկաների հետզհետե մեծացող զանգված և մշակման ենթակա քանակություն: Ամբողջ աշխարհում, հատկապես զարգացած սոցիալիստական և կապիտալիստական երկրներում, տասնյակ և հարյուրավոր անգամ ավելացել է հումքի, նյութերի, վառելիքի և էներգիայի արդյունահանումը, արտադրանքը և սպառումը: Այսպես, 1913—1974 թթ. ժամանակաշրջանում էլեկտրաէներգիայի համաշխարհային արտադրանքը 60 մլրդ կվտ-ժամից ավելացել է մինչև 6.300 մլրդ կվտ-ժամ կամ 105 անգամ, նավթի արդյունահանումը՝ 54 մլն տոննայից մինչև 2.760 մլն տոննա. կամ 51 անգամ, բնական գազինը՝ 17 մլրդ խորանարդ մետրից մինչև 1.263 մլրդ խ. մ. կամ 74 անգամ, պողպատի ձուլումը՝ 76 մլն տոննայից մինչև 710 մլն տոննա կամ 9 անգամ: Սովետական Միությունում, 1940 թ. համեմատությամբ, 1974 թ. էլեկտրաէներգիայի արտադրությունն ավելացել է 24, նավթի արդյունահանումը՝ 15, գազինը՝ 87, պողպատի ձուլումը՝ 7 անգամ:

Հարաբերական նյութատարությունը նյութերի վրա արժեքային կամ բնական արտահայտությամբ կատարված գումարային ծախսերի և ազգային եկամտի հարաբերությունն է կամ արտադրության ծախքերի մեջ նյութերի վրա կատարված ծախսումների բաժինը:

Չնայած նյութերի տեսակարար ծախսերի նվազմանը, ՍՍՀՄ արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքում բոլոր տեսակի վառելանյութերի և էներգիայի ծախսերի մասն աճել է. 1930 թ. 39,2 տոկոսից 1960 թ. հասել է 74,0 տոկոսի, 1970 թ.՝ 75,6 և 1974 թ.՝ 80,7 տոկոսի:

Տեսակարար նյութատարությունը մեկ միավոր արտադրանքի վրա ծախսված նյութերի քանակն է: Բնական է, որ բազմազան գործոնների, առաջին հերթին՝ գիտա-տեխնիկական առաջընթացի, ազդեցությամբ տեսակարար նյութատարությունը նվազում է:

Մեր երկրում որոշ հաջողություններ են ձեռք բերված նյութերի խնայողության գործում: Տեխնիկական պրոգրեսը, առաջավոր տեխնոլոգիան, հասարակական արտադրության ներճյուղային, միջճյուղային և տերիտորիալ կառուցվածքի բարելավումը, աշխատանքի ավանդական առարկաների կոմպլեքսային, խոր ու բանիմաց օգտագործումը և նախապես անհայտ հատկություններով օժտված աշխատանքի որակի բարձրացումը և շատ ուրիշ հանգամանքներ նպաստել են մեկ միավոր արտադրանքի վրա ծախսված հումքի, նյութերի, վառելանյութի, էլեկտրաէներգիայի կրճատմանը: Օրինակ, 1 կվտ-ժամ էներգիա ստանալու համար ջերմաէլեկտրակայաններում պայմանական վառելիքի ծախսը, եթե 1940 թ. կազմում էր 645 գ, ապա 1960 թ. իջավ 468 գ, իսկ 1975 թ.՝ 340 գ:

Վառելանյութի տեսակարար ծախսերի նվազեցման վերաբերյալ իններորդ հնգամյակի պլանային առաջադրանքների կատարումը հնարավորություն տվեց տնտեսել 60 մլն տոննա պայմանական վառելանյութ:

Իններորդ հնգամյակում մարդատար ավտոմեքենաների մետաղատարությունը պակասեց 20, իսկ բեռնատարներինը՝ 16,5 տոկոսով: Նոր հերկող Т—150 և Т—150К տրակտորների տեսակարար մետաղատարությունը, նույն կարգի Т—74 տրակտորների համեմատությամբ, պակասեց 40 տոկոսով:

Հայկական ՍՍՀ-ում 1975 թ. էլեկտրաէներգիայի թողարկման համար վառելանյութի տեսակարար ծախսերի նվազեցման շնորհիվ 285 հազար տոննա պակաս մազութ օգտագործվեց, քան պահանջվում էր 1970 թ. նորմաներով:

Միաժամանակ մեզ մոտ թույլ է տրվում հումքի, նյութերի գերածախս և կորուստ: Մեր գործարանների թողարկած մեկ միավոր արտադրանքի վրա ծախսված վառելանյութը, էլեկտրաէներգիան, մետաղը, փայտանյութը, շինանյութերը և այլն ավելին են, քան պահանջում է տեխնիկայի և տեխնոլոգիայի ժամանակակից մակարդակը: Մեքենաների պատրաստման պրոցեսում առաջանում է 14,5 մլն տոննա մետաղի մնացորդ, որից 7 մլն տոննան կազմում են թափոնները: Երկրում ամեն տարի գերածախսվում է գրեթե երկու մլն տոննա պայմանական վառելանյութ, 1,5 մլրդ կվտ-ժամ էլեկտրաէներգիա:

Նյութերի, վառելիքի և էլեկտրաէներգիայի անտնտեսվար օգտագործման օրինակները քիչ չեն Հայկական ՍՍՀ-ում։ Ընդամենը 1975 թ. գերածախսվել է 4,2 մլն կվտ-ժամ էլեկտրաէներգիա և 22 հազար գիգակալորիա ջերմություն։

Նյութերի օգտագործման արդյունավետության բարձրացման համար խոշոր քայլ է ՍՄԿԿ XXV համագումարի նախատեսած կոմպլեքսային ծրագիրը։ Հնգամյակում գիտության և տեխնիկայի առաջավոր նվաճումների լայն կիրառումը, ապրանքների ավելի շահավետ տեսակների թողարկման ավելացումը, հումքի ու նյութերի տեսակարար ծախսերի պակասեցումը և դրանց ավելի խոր վերամշակումը, երկրորդային ռեսուրսների ավելի լայն օգտագործումը կապահովի սև մետաղների տնտեսում՝ մեքենաշինության մեջ 15 տոկոսով, շինարարությունում՝ 6 և այլն։ Մեկ կվտ-ժամ էլեկտրաէներգիայի թողարկման համար վառելանյութի ծախսը 1980 թ. կնվազի մինչև 325—328 գր.։

Աշխատանքի արտադրողականության և նյութախնայողության հետ մեկտեղ արտադրության արդյունավետության բարձրացման գործուն միջոց է ֆոնդահատույցը։

ՀԱՍՈՒՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳՈՒՄ արտադրական ապարատի ռացիոնալ օգտագործման պրոբլեմը հետզհետե առավել մեծ նշանակություն է ստանում։ 1976 թ. հունվարի 1-ի դրությամբ ժողովրդական տնտեսության հիմնական արտադրաֆոնդերի ծավալը գերազանցեց 800 մլրդ ռուբլուց։

«Կուսակցության տնտեսական ստրատեգիայի առանցքը,— ասել է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— որի վրա են խարսխվում թե՛ տասներորդ հնգամյակը և թե՛ տևական հեռանկարը, երկրի տնտեսական հզորության հետագա մեծացումն է, արտադրական ֆոնդերի ընդլայնումն ու արմատական նորացումը, էկոնոմիկայի հիմքի՝ ծանր արդյունաբերության կայուն հաշվեկշռված աճի ապահովումը» (Նույն տեղը, էջ 68)։

Արդյունաբերության մեջ արտադրական ֆոնդերի մեկ ռուբլուց ֆոնդահատույցի միայն մեկ կոպեկով ավելացումը 1976 թ. կբերի 3,5 մլրդ ռուբլու տնտեսում։

Փաստերը հաստատում են, որ սովետական իշխանության տարիներին նպաստավոր էր արտադրանքի և ֆոնդերի աճի հարաբերակցությունը։ Այսպես, 1974 թ. արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1940 թ. համեմատությամբ, ավելացավ 15,7, իսկ հիմնական արտադրաֆոնդերինը՝ 15 անգամ։

Միաժամանակ երկարատև ժամանակաշրջանի առանձին հատվածներում այդ երկու ցուցանիշների միջև գոյություն ուներ անհամապատասխանություն։ Եթե ՍՍՀՄ-ում մինչև 1958 թ. արդյունաբերության համախառն արտադրանքի աճն ավելին էր, քան հիմնական արտադրաֆոնդերինը, ապա այդ վիճակը հետագայում փոխվեց։ Օրինակ, 1965 թ. արդյունաբերության ամբողջ արտադրանքը, 1960 թ. համեմատությամբ, ավելացավ 151, իսկ հիմնական ֆոնդերը՝ 168 տոկոսով, 1970 թ. այդ աճը, 1965 թ. համեմատությամբ, կազմեց համապատասխանաբար՝ 200 և 210 տոկոս, 1975 թ. արդյունաբերության արտադրանքի ծավալն աճեց 143, իսկ հիմնական ֆոնդերը՝ 150 տոկոսով։

Հայաստանում 1975 թ. արդյունաբերական-արտադրական հիմնական ֆոնդերը, 1940 թ. համեմատությամբ, ավելացան 43, իսկ արտադրանքի ծավալը՝ 31 անգամ, այսինքն մեծացավ ֆոնդատարությունը։ Մինչև 1950 թ. ֆոնդերն ավելի արագ էին աճում, քան արտադրանքը. 50-ական թվականներին այդ երկու ցուցանիշները միանգամայն նույն տեմպերով էին աճում. այնուհետև մինչև 60-ական թվականների կեսերը «արտադրանք-ֆոնդեր» հարաբերակցությունը վատթարացավ, այնուհետև ֆոնդահատույցը կայունացավ, ունենալով աճի տենդենց, իսկ 70-ական թթ. սկզբին ֆոնդահատույցը խիստ նվազեց։

Ֆոնդահատույցը պայմանավորվում է շատ գործոններով, ուստի դրա անտեշարժը հակասական է և չի կարող բացատրվել պարզ և միակերպ։ Եթե անտեսենք սուբյեկտիվ հանգամանքները, պլանավորման, գնագոյացման և այլ գործերում թույլ տրված վրիպումները, ապա ֆոնդահատույցի նվազումները բացատրվում են այնպիսի պատճառներով, ինչպիսիք են շինարարական ժամ-



կետների ձգձգումը, նախագծային հզորությունների դանդաղ յուրացումը, արտադրության և աշխատանքի միջոցների ոչ ռացիոնալ օգտագործումը, երկրի արևելյան և հյուսիսային շրջանների յուրացումը, օգտակար հանածոների մշակման պայմանների վատթարացումը, դրանց օգտակար կոմպոնենտի ծավալի նվազումը, բնության պահպանման միջոցառումները, աշխատանքի ավելի բարենպաստ պայմանների ստեղծումը և այլն։

ՀԱՆՐԱՅԻՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆՆ անխզելիորեն պայմանավորվում է որակով, այդ հասկացության ամենալայն իմաստով։ Մոսկվայի Լիխաչովի անվան ավտոգործարանի բանվորների հետ ունեցած հանդիպման ժամանակ ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Որակի վրա ազդում է բացի ամեն ինչ... բայց այդ գործոններից յուրաքանչյուրի ակունքներում կանգնած են կոնկրետ կատարողներ։ Հետևաբար, վերջին հաշվով, ամեն ինչ հանգում է մարդկանց բարեխղճությանը, նրանց աշխատանքի որակին»։

Աշխատանքի որակը ենթադրում է աշխատանքի բարձր կուլտուրա, հանրակրթական և մասնագիտական պատրաստության մակարդակ, աշխատանքային պրոցեսի ճիշտ կազմակերպում և անխափան ռիթմ, տեխնոլոգիական ռեժիմի անշեղ պահպանում, աշխատաժամանակի, աշխատանքային, նյութական և ֆինանսական ռեսուրսների օգտագործման նկատմամբ խնայողական և դրա հետ մեկտեղ ստեղծագործական վերաբերմունք։

Որակի չափանիշը հասարակության արդի պահանջների և դրանց բավարարման օպտիմալ համապատասխանությունն է, գիտականորեն հիմնավորված նորմերի հաշվառումը։

Մինչև 1976 թվականը որակի պետական նշան էր շնորհված հանրապետության արտադրանքի, ընդհանուր առմամբ, 500 անվանումների, որոնք կազմում են արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի սոսկ 6,5 տոկոսը։ Գունավոր մետալուրգիայի, շինանյութերի արդյունաբերության (բացառությամբ «Հայբյուրեղապակի» գործարանի), ավտոմոբիլային և կապի ձեռնարկությունների ոչ մի սարք չի ստացել որականիշի ատեստատ, իսկ քիմիական, հաստոցաշինական և փայտամշակման ձեռնարկություններում շարունակվում է հնացած, արտադրությունից հանման ենթակա արտադրանքի թողարկումը։ Օրինակ, արդեն գրեթե 20 տարի է, ինչ Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանն արտադրում է հին կոնստրուկցիայի IM—61 խառատա-կենտրոնային հաստոցը, այն դեպքում, երբ ձեռնարկության վերակառուցման համար անհրաժեշտ միջոցներ չհատկացնելու պատճառով այստեղ ձգձգվում է խառատային պտուտակահատիչ հաստոցի նոր մոդելի յուրացումը։ «Հայէլեկտրագործարանում» անհիմն կերպով ձգձգվում է նաև «ՕՍ» սինխրոնային գեներատորների նոր ընդհանուր-միութենական սերիական թողարկումը։

Ընթացիկ հնգամյակում մեծ աշխատանք է տարվելու որակական ցուցանիշների բարելավման համար։ Գիտության ու տեխնիկայի նվաճումները լայնորեն և ժամանակին արմատավորելու, նյութական, ֆինանսական և աշխատանքային միջոցները կենտրոնացնելու և նոր օբյեկտների շինարարությունը մինչև սահմանված մակարդակը հասցնելու, վերակառուցման ու վերասարքավորման նպատակով արվող կապիտալ ներդրումների տեսակարար կշիռը մեծացնելու, արտադրության ինտենսիվացումը, կառավարումը կատարելագործելու և այլ միջոցներով նշանակալիորեն կբարձրանան մարդկանց աշխատանքային գործունեության արդյունավետությունն ու որակը։

Աշխատանքի արդյունավետության բարձրացման և որակի բարելավման հզոր լծակ է սոցիալիստական մրցության համակողմանի ծավալումը։ Աշխատանքի նկատմամբ մարդկանց կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակումն ու հանձնարարված գործի վերաբերյալ պատասխանատվության բարձրացումն է պլանային առաջադրանքների կատարման և գերակատարման երաշխիքը։

## ՊՐՈԲԼԵՄԱՅԻՆ ՏԵՍԱԿԱՆ ՍԵՄԻՆԱՐՆԵՐ

# ՍՄԿԿ-Ի ԱԳՐԱՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆ ԱՐԴԻ ՓՈՒԼՈՒՄ

Ս. ԻՎԱՆՈՎ

ԱԳՐԱՐԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՍՄԿԿ-ի ընդհանուր քաղաքական կուրսի անբաժանելի բաղկացուցիչ մասն է։ Դրա համակողմանի, գիտական հիմնավորումն առաջին անգամ տվել է Վ. Ի. Լենինը։ Մեր կուսակցությունը հսկայական աշխատանք է կատարել երկրի պատմական նոր պայմաններին, պահանջմունքներին ու հնարավորություններին համապատասխան լենինյան ագրարային ծրագիրը կենսագործելու, այն է՛լ ավելի զարգացնելու ուղղությամբ։

Սովետական հասարակարգի թևակոխումը զարգացած սոցիալիզմի ժամանակաշրջանը նոր խնդիրներ դրեց մեր ամբողջ էկոնոմիկայի առջև, մասնավորապես գյուղատնտեսության առջև։ Հաշվի առնելով հասարակական զարգացման օբյեկտիվ պահանջմունքները, կուսակցությունը մշակեց ժամանակակից ագրարային քաղաքականությունը։ Այդ քաղաքականության սկզբունքային հիմքերը դրեց ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թվականի) պլենումը։ Հետագայում նրա զանազան կողմերը կոնկրետացվեցին և խորացվեցին Կենտկոմի հետագա պլենումներում, ՍՄԿԿ XXIII, XXIV և XXV համագումարների որոշումներում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատություններում ու ելույթներում, կուսակցության մյուս փաստաթղթերում։ Կուսակցության մշակած ագրարային քաղաքականությունը խոշոր ավանդ է մարքսիզմ-լենինիզմի տեսության մեջ։ Այդ քաղաքականությունն աչքի է ընկնում խորությամբ ու հիմնավորվածությամբ, գյուղատնտեսության առջև ծառացած պրոբլեմների լուծման նկատմամբ կոմպլեքսային մոտեցմամբ, ռեալ իրականության համակողմանի հաշվառմամբ, նպատակների ու դրանց հասնելու ուղիների միասնությամբ։

Այստեղ մենք քննության կառնենք տվյալ պրոբլեմի մի քանի հանգուցային հարցերը միայն։ Դրանք են՝

1. ՍՄԿԿ XXV համագումարը գյուղատնտեսության վերելքի կոմպլեքսային ծրագրի մասին։
2. Գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացումը կենտրոնական խնդիրն է։
3. Մասնագիտացման և միջտնտեսական կոոպերացման լայն զարգացման կուսակցության կուրսը։
4. Գյուղի տնտեսական և սոցիալական զարգացման միասնությունը։

✦

ՍՄԿԿ-ի արդի ագրարային քաղաքականությունն ընդգրկում է գյուղատնտեսական արտադրության և գյուղական աշխատավորների կյանքի բոլոր կողմերը։ Նրա հիմնական բովանդակությունն է՝ ապահովել գյուղի արտադրո-



ղական ուժերի պլանաչափ ու դինամիկ աճը, գյուղատնտեսական աշխատանքի արմատական վերափոխումը, գյուղի դեմքի փոփոխումը, գյուղատնտեսությունը դարձնել մեր էկոնոմիկայի բարձր զարգացած սեկտոր։ Ինչպես մատնանշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թ.) պլենումում արտասանած ճառում, «...այժմ չկա ավելի կենսական խնդիր, քան մեր էկոնոմիկայի ագրարային սեկտորը ամենաարդիական մակարդակին հասցնելը» («Լենինյան ուղիով» ամսագիր, № 11, էջ 6)։

Բացառիկ մեծ են հանրային արտադրության այդ ճյուղի դերն ու նշանակությունը կուսակցության տնտեսական ստրատեգիայի բարձրագույն տնտեսական խնդրի լուծման գործում։ Հիշեցնենք, որ գյուղատնտեսության արտադրանքից ու դրա արդյունաբերական վերամշակումից է կազմվում ժողովրդական սպառման ֆոնդի մոտ երեք քառորդը։ Այս ճյուղում է ստեղծվում ազգային եկամտի նշանակալի մասը։ Ուստի գյուղատնտեսության վիճակից են մեծապես կախված ողջ սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման տեմպերը, ժողովրդական բարեկեցության աճը, կոմունիստական շինարարության մյուս խոշոր պրոբլեմների հաջող լուծումը։

Գյուղում կուսակցության վարած ներկայիս քաղաքականության կոնկրետ մարմնավորումն է գյուղատնտեսության վերելքի կոմպլեքսային լայն ծրագիրը, որը մշակվել է ՍՄԿԿ Կենտկոմի մարտյան (1965 թ.) և հետագա պլենումներում ու զարգացվել կուսակցության XXIV և XXV համագումարների կողմից։ Այն նախատեսված է տևական ժամանակաշրջանի համար, որոշում է գյուղատնտեսական արտադրության զարգացման գլխավոր ուղղությունները։

Կոմպլեքսայնության գաղափարը ՍՄԿԿ-ի արդի ագրարային քաղաքականության առանցքն է։ Ո՞րն է դրա էությունը գյուղատնտեսության նկատմամբ։

Դա ամենից առաջ սիստեմային, գիտական մոտեցումն է գյուղատնտեսության զարգացման արմատական պրոբլեմների լուծման նկատմամբ։ Այն ենթադրում է էկոնոմիկայի, հասարակության կյանքի բոլոր պրոցեսների, երևույթների խոր վերլուծություն և հանգամանալից հաշվառում՝ նրանց փոխադարձ կապի ու փոխպայմանավորվածության մեջ։ Իր ագրարային քաղաքականության բնագավառում կուսակցությունը համակողմանիորեն հաշվի է առնում ամբողջ երկրի էկոնոմիկայի ձեռք բերված մակարդակը, գյուղատնտեսական արտադրության ու նրա ճյուղերի առանձնահատկությունը, երկրի տարբեր գոտիների բնական պայմանները և այլն։

Կոմպլեքսային ծրագրի կարևոր կողմն այն է, որ գործի են դրվում գյուղատնտեսության զարգացումը որոշող բոլոր գործոնները։ Անհրաժեշտ է, ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, հաշվի առնել գյուղատնտեսական արտադրության վերելքի գործոնների ողջ կոմպլեքսը, ներառյալ և գյուղին անհրաժեշտ տեխնիկա և պարարտանյութեր մատակարարելու, կապիտալ շինարարությունն ընդլայնելու, հողերը բարելավելու, կադրեր պատրաստելու, արտադրության կազմակերպումը կատարելագործելու հարցերը։ Այս գիծը ցայտուն կերպով երևում է գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ կուսակցության և կառավարության վերջին տարիներին ընդունած բոլոր որոշումների մեջ։

Գյուղատնտեսական արտադրության վերելքի կոմպլեքսային ծրագրում անխզելի միասնության մեջ նախատեսվում է գյուղի արտադրողական ուժերի անշեղ աճը, նրա սոցիալական զարգացումը։ Խոսքը գյուղի կյանքի նյութական-արտադրական, տնտեսական և հասարակական ասպեկտների փոխկապակցված լուծման մասին է։ Դրա ակնբախ օրինակ է ծառայում ՌՍՖՍՀ-ի ոչ սևահողային գոտու սոցիալ-տնտեսական զարգացման ծրագիրը։

Ընդգծենք, վերջապես, որ գյուղատնտեսության կոմպլեքսային զարգացումը ենթադրում է արդյունաբերության, տրանսպորտի, շինարարության հետ նրա ունեցած արտադրական, տնտեսական կապերի ընդլայնում ու խորացում։ Բանն այն է, որ գյուղատնտեսական արտադրության դինամիկ զարգացումը մեծապես որոշվում է այն բանով, թե մեր արդյունաբերությունը որքան հաջող է կատարում գյուղի պատվերները, ինչպես են կազմակերպված ինժեներա-

տեխնիկական և ագրոքիմիական ծառայությունները, մթերող-վաճառահանող
սիստեմի, շինարարական կազմակերպությունների գործունեությունը և այլն:
Ահա ինչու ՍՄԿԿ XXV համագումարը պահանջեց լրջորեն բարելավել, կատա-
րելագործել գյուղատնտեսության արտադրա-տնտեսական համագործակցու-
թյունն արդյունաբերության և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի
հետ:

Այսպիսով, կուսակցության մշակած ագրարային ծրագիրը կազմում է
ՍՄԿԿ XXIV և XXV համագումարների կողմից մշակված կոմունիստական շի-
նարարության ընդհանուր պլանի անբաժանելի մասը:

Գյուղատնտեսության վերելքին ուղղված համալիրային միջոցառումնե-
րի սիստեմում կարևորագույն նշանակություն են ունեցել ամենից առաջ տըն-
տեսական կարգի միջոցառումները, որոնք ձեռնարկվել են ճյուղի անշեղ զար-
գացման համար անհրաժեշտ նախադրյալներ ստեղծելու, իրենց գործունեու-
թյան արդյունքների նկատմամբ գյուղատնտեսական ձեռնարկությունների,
կոլտնտեսականների և սովխոզների աշխատողների նյութական շահագրգռվա-
ծությունը բարձրացնելու նպատակով:

Վերջին տասը տարում գյուղատնտեսության մեջ ներդրվել է 213 մլրդ
ռուբլի, որը 2 անգամ գերազանցում է սովետական իշխանության բոլոր նա-
խորդ տարիներին կատարված կապիտալ ներդրումներին: Դա հնարավորու-
թյուն տվեց արագացնել գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացու-
մը, նրա տեխնիկական վերազինումը, հողերի քիմիացումը, մելիորացումը,
թույլ տվեց, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, ստեղծել հիմք և այն
էլ կայուն, հաստատուն հիմք՝ գյուղատնտեսությունն էկոնոմիկայի բարձր
զարգացած սեկտոր դարձնելու համար:

Գյուղատնտեսության համախառն արտադրանքի տարեկան միջին արտա-
դրությունը վերջին տասնամյակում աճել է 1,4 անգամ՝ նախորդ նույն ժամա-
նակաշրջանի համեմատությամբ, իսկ բնակչության մեկ շնչի հաշվով՝ գրեթե
25 տոկոսով: Զգալիորեն ավելացել են կոլտնտեսականների և սովխոզների աշ-
խատողների ռեալ եկամուտները, բարելավվել է նրանց սոցիալական ապա-
հովությունը և կուլտուր-կենցաղային սպասարկումը, բարձրացել է գյուղի
աշխատավորների հանրակրթական և պրոֆեսիոնալ պատրաստության մա-
կարդակը: Այս ամենը վկայում է այն մասին, որ գյուղատնտեսության բնա-
գավառում կուսակցության հիմնական դրույթները, որոնք լրիվ համապատաս-
խանում են լենինիզմի ոգուն, դիմացել են ժամանակի ստուգմանը, ցույց են
տվել իրենց կենսական ուժը, բարձր ներգործունությունն ու արդյունավետու-
թյունը: Կուսակցությունը, ինչպես նշեց ՍՄԿԿ XXV համագումարը, հետագա-
յում ևս ղեկավարվելու է դրանցով:

Գյուղատնտեսության բնագավառում, ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը համա-
գումարին տված զեկուցման մեջ, կուսակցությունն առաջադրում է երկու փոխ-
կապակցված նպատակ. նախ, հասնել այն բանին, որ երկիրը հուսալիորեն
ապահովված լինի պարենամթերքով և գյուղատնտեսական հումքով, միշտ ու-
նենա բավականաչափ ռեզերվներ դրա համար, և, երկրորդ, է՛լ ավելի առաջ
գնալ քաղաքի և գյուղի կյանքի նյութական ու կուլտուր-կենցաղային պայ-
մանների մերձեցման ուղիով: Այս երկու նպատակներն էլ ունեն սկզբունքային
տնտեսական ու քաղաքական նշանակություն: Դրանց մեջ արտահայտված են
գյուղատնտեսությունը հետևողականորեն սոցիալիստական էկոնոմիկայի ա-
ռաջավոր, բարձր զարգացած ճյուղ դարձնելու մեր կուսակցության կուրսը,
արդի փուլում ՍՄԿԿ-ի ագրարային քաղաքականության հիմնական ուղղու-
թյունների հաջորդականությունը:

ՍՄԿԿ XXV համագումարը մատնանշեց գյուղատնտեսական արտադրությունը հետե-
վողականորեն ու անշեղորեն ինտենսիվացնելու, արտադրական պրոցեսների կոմպլեքսա-
յին մեքենայացումն ու ավտոմատացումը, դրանց քիմիացումը, հողերի մելիորացումը
արագացնելու անհրաժեշտությունը: 1976—1980 թվականներին աշխատանքների ամբողջ
կոմպլեքսի գծով գյուղատնտեսության զարգացմանը հատկացվում է ավելի քան 170 մլրդ
ռուբլու կապիտալ ներդրումներ, որը գրեթե մեկ երրորդով ավելի է, քան նախորդ հնգամ-



յակում. Գյուղատնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումների աճի տեմպերը,
ինչպես և նախորդ տարիներին, կլինեն մի քիչ ավելի բարձր, քան ամբողջ ժողովրդական
տնտեսության մեջ: Դա լրիվ համապատասխանում է ագրարային քաղաքականության բնա-
գավառում կուսակցության վարած գծին, կոմունիստական շինարարության ընդհանուր խըն-
դիրներին:

Զարգացնելով գյուղատնտեսության վերելքի կոմպլեքսային ծրագիրը,
ՍՄԿԿ XXV համագումարը հատուկ ուշադրություն դարձրեց մի շարք կարևոր
մոմենտների վրա: Դա ամենից առաջ այդ ճյուղի զարգացման ավելի մեծ կա-
յունության, արտադրության արդյունավետության աճի, նրա մասնագիտաց-
ման ու համակենտրոնացման խորացման, ժողովրդական տնտեսության մյուս
ճյուղերի հետ գյուղատնտեսության արտադրա-տնտեսական համագործակցու-
թյան բարելավման, գյուղական և քաղաքային բնակչության կենսամակար-
դակների արագացած մերձեցման ապահովումն է:

Տասներորդ հնգամյակի համար որոշված են հողագործության և անաս-
նապահական մթերքների բոլոր հիմնական տեսակների արտադրության ավե-
լացման կոնկրետ առաջադրանքներ: Համախառն արտադրանքի արտադրու-
թյան տարեկան միջին ծավալը, իններորդ հնգամյակի համեմատությամբ, նա-
խատեսվում է բարձրացնել 16 տոկոսով: Հացահատիկի արտադրության ավե-
լացումը համագումարն անվանեց գյուղատնտեսության հարվածային տեղա-
մաս: Նրա տարեկան միջին համախառն բերքը պետք է ավելանա գրեթե 40 մլն
տոննայով: Նախատեսված է նաև մյուս բոլոր գյուղատնտեսական մթերքների
արտադրության հետագա նշանակալի աճ:

✦

Գյուղատնտեսության զարգացման բնագավառում կուսակցությունը ել-
նում է ընդհանուր տնտեսական ստրատեգիայից, որն ուղղված է ամբողջ հան-
րային արտադրության արդյունավետության շեշտակի բարձրացմանը: «Գյու-
ղատնտեսական արտադրության շեշտակի վերելքը՝ կուսակցության վերցրած
կուրսի շրջանակներում, աշխատանքի հիմնական ուղղությունների ամբողջ
միասնականությամբ հանդերձ,— ասաց ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համա-
գումարում,— յուրաքանչյուր հնգամյակ ունի իր առանձնահատկությունները:
Ներկայումս գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապընդ-
ման համեմատ ամբողջ հասակով մեկ կանգնում է նրա արդյունավետությունը
բարձրացնելու ու որակական բոլոր ցուցանիշները բարելավելու խնդիրը»
(ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության ներքական խնդիրները
ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ.,
1976 թ., էջ 83):

Արտադրության արդյունավետության բարձրացումը տալիս է տնտեսա-
կան մեծ օգուտ: Արտադրանքի ինքնաժեքի իջեցումը միայն մեկ տոկոսով նշա-
նակում է մոտավորապես 700 մլն ռուբլու մաքուր եկամտի ավելացում գյու-
ղատնտեսության մեջ, իսկ արտադրական նշանակության կապիտալ ներդրում-
ների յուրաքանչյուր ռուբլու հատուցումը մեկ կոպեկով բարձրացնելը հնարա-
վորություն կտար լրացուցիչ ստանալ ավելի քան 1 մլրդ ռուբլու արտադրանք:
Ընկեր Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում հստակ
կերպ ձևակերպեց գյուղատնտեսական արտադրության արդյունավետության
համար մղվող պայքարի ընդհանուր խնդիրը. խելացիորեն, տնտեսաբար օգ-
տագործել պետության կողմից գյուղատնտեսության զարգացման համար հատ-
կացվող հսկայական ռեսուրսները, հոգատար վերաբերմունք ցուցաբերել դեպի
հողը, հասնել յուրաքանչյուր հեկտարի, ներդրված յուրաքանչյուր ռուբլու,
պարարտանյութի յուրաքանչյուր տոննայի առավելագույն փոխհատուցման:

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներում սահմանված են գյուղատնտե-
սական արտադրության արդյունավետության բարձրացման ուղիները: Խոսքն
ամենից առաջ կապիտալ ներդրումների ռացիոնալ օգտագործման մասին է:
Դրանք պետք է հատկացվեն ոչ թե ընդհանրապես, այլ արտադրանքի նախա-
պես պլանավորված աճի համար: Կապիտալ ներդրումների քաղաքականության

թվին են պատկանում ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի՝ «Հանքային պարարտանյութերի օգտագործման արդյունավետությունն էլ ավելի բարձրացնելու, փոխադրելիս, պահպանելիս ու օգտագործելիս դրանց կորուստները կրճատելու և կոլտնտեսությունների ու սովխոզների ագրոքիմիական սպասարկումը կատարելագործելու միջոցառումների մասին» (1976 թվականի հունիս) և «Հողերի մելիորացման 1976—1980 թվականների պլանի և մելիորացված հողերի օգտագործումը բարելավելու միջոցառումների մասին» (1976 թվականի օգոստոս) որոշումները։ Այս փաստաթղթերում տրված է գործողությունների ծավալուն ծրագիրը կուսակցական, սովետական և տնտեսական մարմինների համար, կոլտնտեսությունների, սովխոզների և գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունների աշխատողների համար։

Առանձնահատուկ ուշադրություն է դարձվում ագրոքիմիական ծառայության կատարելագործման վրա, «Գյուղտնտտեխնիկա» սիստեմում մասնագիտացված ստորաբաժանումների զարգացման վրա, այնտեղ, ուր դա նպատակահարմար է՝ միջկոլտնտեսային կոոպերացման հիման վրա գյուղատնտեսության քիմիացման միջկոլտնտեսային, միջսովխոզային, կոլտնտեսային-սովխոզային կազմակերպությունների և գիտա-արտադրական միավորումների ստեղծման վրա։ Մելիորացված հողերի ավելի արդյունավետ օգտագործման նպատակով նախատեսվում է կարևոր շատ հարցերի կոմպլեքսային լուծում, ներառյալ և մելիորատիվ սիստեմների շահագործման բարելավումը, կոլտնտեսությունների և սովխոզների ապահովումն անհրաժեշտ քանակությամբ հանքային պարարտանյութերով, տեխնիկայով, բարձր բերքատու սերմերով, մելիորատորների կադրերի պատրաստման ընդլայնումը և այլն։

Կենսագործելով ՍՄԿԿ XXV համագումարի պատմական որոշումները, գյուղի աշխատավորները, կոլտնտեսային և սովխոզային արտադրության առաջավորներն ու նորարարներն ավելի լայնորեն են ծավալում սոցիալիստական մրցությունը տասներորդ հնգամյակի առաջին տարում։ Շատ մարզեր, երկրամասեր ու հանրապետություններ կատարել ու գերակատարել են պետությանը հացահատիկ և գյուղատնտեսական այլ մթերքներ վաճառելու համար ստանձնած ավելի բարձր սոցիալիստական պարտավորությունները։ Մեծ աշխատանք է կատարվել աշնանացան հողատարածությունն ընդլայնելու ուղղությամբ, որը եկող տարվա բերքի հուսալի հիմքն է։

Ընթացիկ տարում հացահատիկի բերքով մենք ընդհուպ կմոտենանք ռեկորդային 1973 թվականի ցուցանիշներին, կամ նույնիսկ կգերազանցենք այն։ «...1976 թվականի հացի համար մղված ճակատամարտը,— նշեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը կուսակցության Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում,— շահված է և պատվով է շահված։ Նրա հերոսներն են առաջավոր կոլտնտեսականներն ու սովխոզների աշխատողները, մեր մեխանիզատորները, գյուղի աշխատավորներին օգնած սովետական բանակի ռազմիկները, կուսակցական, կոմերիտական ու սովետական աշխատողները՝ բերքի համար մղված պայքարի անխոնջ կազմակերպիչները։ Նրա հերոսները բոլոր միութենական և ինքնավար հանրապետությունների աշխատավորներն են» («Լենինյան ուղիով» ամսագիր, № 11, էջ 8—9)։

Անասնապահների անձնվեր աշխատանքի և կուսակցության կողմից մի շարք խոշոր միջոցառումների իրականացման շնորհիվ կոլտնտեսություններն ու սովխոզներն ավելացրին խոշոր եղջերավոր անասունների, այդ թվում և կովերի գլխաքանակը, անցյալ տարվա անբարենպաստ եղանակի պայմաններում թույլ չտվին անասունների և թռչունների մթերատվության խիստ անկում։ Հաջողությամբ է կատարվել հյութալի և կոշտ կերերի մթերումը։ Շատ տնտեսություններում ստեղծվել են ֆուրաժի ապահովագրական փոխանցվող ֆոնդեր։ Այս ամենն անհրաժեշտ պայմաններ է ստեղծում անասնապահության զարգացման գործում հետագա դրական տեղաշարժերը ապահովելու համար։

✦

Գյուղատնտեսության զարգացման տեմպերն արագացնելու և նրա արդյունավետությունը բարձրացնելու գործում այժմ առաջին պլանի վրա են դրվել արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումը միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թվական) պլենումում, այստեղ թաքնված են արտադրության ծավալների աճի, աշխատանքի արտադրողականության շեշտակի բարձրացման, հողագործության և անասնապահության արտադրանքի ինքնաժեքի իջեցման հսկայական հնարավորություններ։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում ընդունեց «Միջտնտեսական կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումն էլ ավելի զարգացնելու մասին»։



Գիտությունը և ժամանակակից պրակտիկան հաստատում են, որ արտադրության ինդուստրիալ մեթոդները գիտատեխնիկական հեղափոխության ժամանակաշրջանում կարող են հաջողությամբ կիրառվել միայն բավականաչափ խոշոր ձեռնարկություններում և միավորումներում։ Դրանք ավելի արագ են արմատավորում գիտության ու տեխնիկայի նվաճումները, հասնում են աշխատանքի բարձր արտադրողականության, արագացրած տեմպերով ավելացնում գյուղատնտեսական արտադրանքի արտադրությունը։ Առաջին հերթին հենց դրա մեջ է միջտնտեսային մասնագիտացման ու կոոպերացման հսկայական նշանակությունը։ Օրինակ, անասնապահական խոշոր ֆերմաներում, կոմպլեքսներում և մասնագիտացված այլ ձեռնարկություններում արտադրանքի մեկ միավորի արտադրության վրա կատարվող աշխատանքի ծախսումները 2—3 անգամ ավելի պակաս են, իսկ ինքնարժեքը 1,5—2 անգամ ավելի ցածր է, քան չմասնագիտացված տնտեսություններում։ Սեմինար պարապմունքի ժամանակ նպատակահարմար է քննարկել խոշոր մասնագիտացված արտադրության առավելությունների հարցը։

Երկրում արդեն կա ավելի քան 6,3 հազար տարբեր միջտնտեսային ձեռնարկություններ, միավորումներ ու կազմակերպություններ։ Կրասնոդարի երկրամասում, օրինակ, գործում է 411 միջտնտեսային միավորում, այդ թվում՝ 287 միջկոլտնտեսային և կոլտնտեսային-սովխոզային անասնապահական ձեռնարկություն։ Ուկրաինայում ինտեգրացված ձեռնարկությունների և միավորումների ընդհանուր թիվը կազմում է ավելի քան 2 հազար։ Բելոռուսական ՍՍՀ-ում ստեղծված է 432 միջտնտեսային արտադրական միավորում, որոնց մեջ փաստորեն մտել են բոլոր կոլտնտեսություններն ու սովխոզները։ Միջտնտեսային ձեռնարկություններ և միավորումներ են ստեղծվում նաև միութենական մյուս հանրապետություններում։

Միջտնտեսային կոոպերացումը և ագրոարդյունաբերական ինտեգրացումը, նպաստելով գյուղի արտադրողական ուժերի արագացած զարգացմանը, կատարում են նաև սոցիալական մեծ դեր։ Խոշոր մասնագիտացված ձեռնարկությունների և միավորումների ստեղծումն ու լայն զարգացումը նշանակում են նոր փուլ գյուղատնտեսության մեջ սոցիալիստական հանրայնացման գործում, պրակտիկայում՝ զարգացած սոցիալիզմի պայմաններում լենինյան կոոպերատիվ պլանի գաղափարների հետագա զարգացում և իրականացում։ Այդ փուլի բնորոշ գծերն են՝ աշխատանքի հասարակական բաժանման խորացումը գյուղում, արտադրական կապերի ընդլայնումը կոլտնտեսությունների և սովխոզների, գյուղատնտեսական և արդյունաբերական ձեռնարկությունների միջև, գյուղատնտեսական աշխատանքի լայն ընդհանրացումը։

Այդ պրոցեսների զարգացման ընթացքում ավելի ակտիվորեն են լուծվելու սոցիալիստական խոշոր պրոբլեմները, որոնք կապված են գյուղում արտադրական հարաբերությունների հետագա կատարելագործման, սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման և հեռանկարում դրանց՝ միասնական համաժողովրդական սեփականության վերաճման հետ, քաղաքի և գյուղի միջև եղած էական տարբերությունների վերջնական հաղթահարման հետ։ Մասնագիտացված ձեռնարկություններում և միավորումներում խոր փոփոխություններ են տեղի ունենում նաև գյուղատնտեսական աշխատանքի բնույթի մեջ։ Կատարելագործվում է աշխատողների պրոֆեսիոնալ պատրաստությունն

ու մասնագիտացումը, խորանում է արտադրության հանրային բնույթը, ավելի
ու ավելի բնորոշ է դառնում մտավոր և ֆիզիկական աշխատանքի օրգանական
զուգորդումը: Նկատի ունենալով մեր ամբողջ հասարակությունը, արագանում
է մարդկանց միջև պահպանված դասակարգային տարբերությունները հաղ-
թահարելու, սոցիալապես լրիվ միատարր հասարակություն ստեղծելու պրո-
ցեսը:
Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման
զարգացման գործում, գյուղատնտեսությունն ինդուստրիալ հիմքի վրա փո-
խադրելու գործում կարևոր դեր է պատկանում բանվոր դասակարգին, սոցիա-
լիստական արդյունաբերությանը: Գյուղատնտեսության առաջընթացի վրա
ավելի ու ավելի մեծ ազդեցություն են գործելու ինդուստրիայի այն ճյուղերը,
որոնք արտադրում են գյուղատնտեսական մեքենաներ և աշխատանքի այլ
գործիքներ, քիմիական միջոցներ, համակցված կերեր, այն ճյուղերը, որոնք
շինարարություն են կատարում գյուղում, զբաղվում են գյուղատնտեսական
արտադրանքի մթերումով, ընդունումով, պահպանումով ու վերամշակումով:
Գյուղատնտեսության ինդուստրացման և ագրոարդյունաբերական կոոպե-
րացման ընդլայնմանը զուգընթաց անշեղորեն աճելու է նաև բանվոր դասա-
կարգի դերը՝ անմիջականորեն էկոնոմիկայի ագրարային սեկտորում: Արտա-
դրական զոդումը քաղաքի և գյուղի միջև, որը հիմնված է բանվորների և գյու-
ղացիների եղբայրական համագործակցության վրա և մեծ դեր է կատարել սո-
ցիալիստական շինարարության նախորդ փուլերում, օրինաչափորեն վերաճում
է գյուղատնտեսության և արդյունաբերության արտադրա-տնտեսական համա-
գործակցության ավելի բարձր ձևի:
Համակողմանիորեն հիմնավորելով գյուղատնտեսության մեջ միջտնտե-
սային կոոպերացման տնտեսական ու սոցիալական դերը, կոմունիստական
կուսակցությունը հստակորեն որոշեց դրա իրականացման ուղիներն ու մե-
թոդները: ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ առանձնահատուկ ուշադրություն է
դարձված սոցիալիստական շինարարության պրակտիկայով ստուգված սկըզ-
բունքները՝ համատեղ համալիրներ, միավորումներ ստեղծելիս կոլտնտեսու-
թյունների, սովխոզների և այլ ձեռնարկությունների համագործակցության
կամավորության, կոնկրետ պայմաններն ու կուտակված փորձը հաշվի առնե-
լով մասնագիտացման կազմակերպական ձևերի ընտրության ժամանակ գիտա-
կան մոտեցման, միջտնտեսային և ագրոարդյունաբերական միավորումների
մեջ մտնող ձեռնարկությունների և կազմակերպությունների տնտեսական ինք-
նուրույնության պահպանման, միավորումների արտադրական գործունեու-
թյան կառավարման մեջ դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքները խստո-
րեն պահպանելու անհրաժեշտության վրա:
Այսպիսին է կոմունիստական շինարարության պրակտիկայում կոոպե-
րացիայի մասին լենինյան ուսմունքի ստեղծագործական կիրառման որակա-
պես նոր փուլը:
Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման
բազայի վրա մասնագիտացումն ու համակենտրոնացումը հեռանկարի համար
նախատեսված տևական պրոցես է: Ակտիվ պաշտպանության է արժանի մի
շարք մարզերի, երկրամասերի ու հանրապետությունների նախաձեռնությունը,
որոնք մշակել են միջտնտեսային կոոպերացման բազայի վրա գյուղատնտե-
սական արտադրության մասնագիտացման ու համակենտրոնացման կոնկրետ,
գիտականորեն հիմնավորված հեռանկարային պլաններ՝ հաշվի առնելով տե-
ղական պայմաններն ու ռեալ հնարավորությունները:
Գյուղատնտեսության զարգացման և նրա արդյունավետության բարձրաց-
ման միջոցառումների կոմպլեքսում ՍՄԿԿ XXV համագումարը մատնանշեց
գյուղատնտեսական արտադրության կազմակերպումն ու կառավարումը բարե-
լավելու անհրաժեշտությունը: Այդ պրոբլեմի հրատապությունը պայմանավոր-
վում է արտադրության աճած մասշտաբով, նրա մասնագիտացման ու համա-
կենտրոնացման խորացմամբ, ժողովրդական տնտեսության սիստեմում գյու-
ղատնտեսության արտադրական և տնտեսական կապերի ընդլայնմամբ: Կա-



րևոր է ապահովել միասնական, համապետական մոտեցումը դեպի ամբողջ
ագրոարդյունաբերական կոմպլեքսի զարգացումը: Խոսքն այն մասին է, որ
ճիշտ որոշվի նրա կառուցվածքը ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ ռեգիոնալ
առումով, անհրաժեշտ համամասնություններ սահմանվեն նրա բաղադրամա-
սերի միջև, որոշվեն առավել ռացիոնալ կապերը կոմպլեքսի ներսում, մշակվեն
կազմակերպական ճիշտ ձևեր, որոնք նպաստավոր պայմաններ են ստեղծում
ամբողջ ագրոարդյունաբերական կոմպլեքսի հաջող գործունեության համար:

✦

Մշակելով գյուղատնտեսության հետագա վերելքի արմատական պրոբլեմ-
ները, ՍՄԿԿ XXV համագումարը մեծ ուշադրություն դարձրեց արդի փուլում
գյուղի սոցիալական զարգացմանը՝ որպես կուսակցության ագրարային քա-
ղաքականության բաղկացուցիչ մասի: Նրա որոշումներում լայն արտացոլում
է գտել այն պրոբլեմների ողջ կոմպլեքսը, որոնք կապված են քաղաքում և
գյուղում սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելա-
գործման, նոր տիպի աշխատողի ձևավորման, գյուղի աշխատավորների նյու-
թական և կուլտուրական մակարդակի բարձրացման հետ: Գյուղի տնտեսական
և սոցիալական զարգացման անխզելի կապը տնտեսական և կուլտուրական շի-
նարարության արդի փուլի կարևորագույն գիծն է:
Գյուղի տնտեսական և սոցիալական զարգացումը հիմնվում է երկրի տըն-
տեսական հզոր հիմքի վրա, կոլտնտեսությունների և սովխոզների նյութատեխ-
նիկական բազայի ըստ ամենայնի ամրապնդման վրա: «...Մանր հողագործի
վերամշակման, նրա ամբողջ հոգեբանության ու նրա հակումների վերամշակ-
ման գործը,— մատնանշում էր Վ. Ի. Լենինը,— սերունդներ պահանջող գործ է:
Այս հարցը լուծել մանր հողագործի նկատմամբ, առողջացնել, այսպես ասած,
նրա ամբողջ հոգեբանությունը, կարող է միայն նյութական բազան, տեխնի-
կան, տրակտորների ու մեքենաների կիրառումը հողագործության մեջ մասսա-
յական մասշտաբով, էլեկտրիֆիկացիան մասսայական մասշտաբով» (Երկեր,
հ. 32, էջ 266): ՍՄԿԿ-ի արդի ագրարային քաղաքականությունը ելնում է լե-
նինյան այդ ցուցումից:
Կոլտնտեսությունների և սովխոզների տեխնիկական հագեցվածության
աճի հիման վրա էական փոփոխություններ են տեղի ունենում գյուղատնտե-
սական աշխատանքի բնույթի մեջ: Աճում է ինդուստրիալ տիպի պրոֆեսիաների
թիվը: Կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատում են ավելի քան
5 միլիոն մեխանիզատորներ: Նրանք կազմում են գյուղատնտեսության մեջ
զբաղված մարդկանց հինգերորդ մասը: Վերջին տարիներին մեծ աշխատանք է
կատարվել գյուղի համար գյուղատնտեսության մասնագետներ, մասսայական
պրոֆեսիաների կադրեր պատրաստելու, կոլտնտեսությունների և սովխոզների
ղեկավարների որակավորումը բարձրացնելու ասպարեզում: Յուրաքանչյուր
տնտեսության այժմ միջին հաշվով ընկնում է 22 դիպլոմավորված մասնագետ:
Անշեղորեն բարձրանում է գյուղական աշխատավորների կուլտուր-տեխ-
նիկական մակարդակը: Այժմ արդեն ամբողջ զբաղված գյուղական բնակչու-
թյան երեք հինգերորդն ունի բարձրագույն կամ միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ)
կրթություն: Խիստ կրճատվել է կրթության մակարդակի մեջ եղած ճեղքվածքը
բանվորների և կոլտնտեսականների միջև: Կոլտնտեսային գյուղացիությունը
իր սոցիալ-տնտեսական դրությամբ, նշվում է ՍՄԿԿ XXV համագումարի փաս-
տաթղթերում, զգալիորեն մոտեցել է բանվոր դասակարգին:
Գյուղի սոցիալ-տնտեսական առաջադիմության գործում խոշոր հաջողու-
թյուններ են ձեռք բերվել իններորդ հնգամյակում: Այդ բանը արտահայտվել է
ամենից առաջ գյուղական աշխատավորների նյութական բարեկեցության նշա-
նակալի վերելքի մեջ: Կոլտնտեսականների աշխատանքի ամսական միջին
վարձատրությունը հնգամյակում աճել է 25 տոկոսով, սովխոզների աշխա-
տողներինը՝ 27 տոկոսով, այն դեպքում, երբ բանվորների ու ծառայողների
աշխատավարձի աճը ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ կազմել է 20
տոկոս: Բարձրացել է կոլտնտեսականների կենսաթոշակների նվազագույն

չափը, նրանց վրա տարածվել է բանվորների ու ծառայողների համար սահմանված կենսաթոշակների հաշվարկման կարգը։ Գյուղական աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացման ակնառու ցուցանիշ է մանրածախ ապրանքաշրջանառության աճը։ 1971—1975 թվականների ընթացքում այն (սպառողական կոոպերացիայի առևտրական ձեռնարկությունների գծով) ավելացել է 34 տոկոսով։ Գյուղական վայրերում բնակչության մեկ շնչի հաշվով ապրանքաշրջանառությունն աճում է ավելի արագ, քան քաղաքում։

Վերջին տարիներին նկատելիորեն բարելավվել է գյուղական բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը։ Կապիտալ ներդրումները գյուղի ոչ արտադրական շինարարության մեջ իններորդ հնգամյակում կազմեցին 19,3 մլրդ ռուբլի, որը 33 տոկոսով ավելի շատ է, քան ութերորդ հնգամյակում։ Ընդլայնվել է ժամանակակից տիպի բնակելի տների, դպրոցների, ակումբների և կուլտուրայի տների, նախադպրոցական հիմնարկների, կենցաղային սպասարկման ձեռնարկությունների, խանութների, ճաշարանների շինարարությունը կոլտնտեսություններում և սովխոզներում։

Գյուղի սոցիալական զարգացման բնագավառում խոշոր միջոցառումներ են իրականացվում ընթացիկ հնգամյակում։ ՍՄԿԿ XXV համագումարը մատնանշեց, որ գյուղատնտեսական արտադրության ինդուստրացումը արագացնելու և գյուղի կուլտուր-կենցաղային սպասարկումը բարելավելու հիման վրա անհրաժեշտ է ապահովել քաղաքային և գյուղական բնակչության կենսապայմանների հետագա մերձեցումը, հետևողականորեն հաղթահարել քաղաքի և գյուղի միջև եղած սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունները։ Նախատեսվում է հնգամյակում կոլտնտեսականների եկամուտները հանրային տնտեսությունից բարձրացնել 26 տոկոսով, ավելացնել սպառման հանրային ֆոնդերից կատարվող վճարումներն ու արտոնությունները։ Բնակչությանը ցույց տրվող կենցաղային ծառայությունների ծավալը գյուղական վայրերում կաճի 1,7 անգամ։ Իրականացվելու են միջոցառումներ կոլտնտեսային գյուղացիության, բանվորների ու ծառայողների սոցիալական ապահովության հետագա մերձեցման ուղղությամբ։

Առաջիկա տարիներին զգալիորեն կընդլայնվի բնակարանային և կուլտուր-կենցաղային շինարարությունը գյուղում, գիտատեխնիկական առաջընթացի պահանջներին համապատասխան հետագա զարգացում կստանա ժողովրդական կրթությունը, կբարելավվի գյուղական բնակչության բժշկական սպասարկումը, կաճի սոցիալիստական կուլտուրայի և արվեստի դերը գյուղի աշխատավորների գաղափարա-քաղաքական և բարոյական դաստիարակության գործում։

Գյուղատնտեսության անշեղ վերելքի համար, կուսակցության ագրարային քաղաքականության կենսագործման համար պայքարող մարտիկների առաջին շարքերում են ընթանում գյուղի կոմունիստները։ Կոլտնտեսությունների և սովխոզների կուսակցական կազմակերպությունները կազմակերպչական և մասսայական-քաղաքական մեծ աշխատանք են տանում դաշտերի ու ֆերմաների աշխատավորների շրջանում, նրանց ջանքերն ուղղում են գյուղատնտեսական արտադրության զարգացման գործում նոր հաջողությունների հասնելու, XXV կուսակցական համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1976 թվական) պլենումի որոշումները կատարելու նպատակին։

### ՌԵՖԵՐԱՏՆԵՐԻ ՄՈՏԱՎՈՐ ԹԵՄԱՆԵՐ

1. Կուսակցության մշակած՝ գյուղատնտեսության վերելքի կոմպլեքսային ծրագրի էությունը։
2. Գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման գործոնները։
3. Գիտության դերը գյուղատնտեսության զարգացման գործում։
4. Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման տնտեսական և սոցիալական դերը։
5. Գյուղի սոցիալական զարգացումը արդի փուլում։

«Политическое самообразование» № 11, 1976.

## ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

# ԴԱՍԱԽՈՍԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻՆ՝ ԲԱՐՁՐ ՄԱԿԱՐԴԱԿ

**Գ. Մ. ՀԱԿՈԲՅԱՆ**
Հայկ. ՍՍՀ «Գիտելիք» ընկերության վարչության գիտական քարտուղար

ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ պատմական խոշոր իրադարձություն էր մեր կուսակցության, սովետական երկրի ու ժողովրդի կյանքում։ Ամփոփելով անցած հնգամյակում կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սովետական ժողովրդի ձեռք բերած արդյունքները՝ համագումարը մեկ անգամ ևս հաստատեց, որ կուսակցությունն ընթանում է լենինյան կուրսով, արժանավայել է կատարում բանվոր դասակարգի, մեր բազմազգ հայրենիքի բոլոր աշխատավորների, սովետական ժողովրդի քաղաքական առաջնորդի դերը։

ՍՄԿԿ XXV համագումարը մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի հիման վրա մշակեց սովետական հասարակության հետագա զարգացման ուղին, սահմանեց կուսակցության ստրատեգիան ու տակտիկան միջազգային ու ներքին քաղաքականության ասպարեզում, սահմանեց արդի փուլում կոմունիզմի կառուցման ՍՄԿԿ-ի քաղաքական հստակ գիծը և գործունեության կոնստրուկտիվ ծրագիրը, նշեց խաղաղության և միջազգային համագործակցության ոլորտում ՍՍՀՄ խնդիրները։

ՍՄԿԿ XXV համագումարի նյութերն ու որոշումները պարփակում են մեր կյանքի բոլոր կողմերը, կուսակցության, սովետական, պետական և հասարակական կազմակերպությունների գործունեության բոլոր ոլորտները։ Ուստի, մեր առաջնահերթ խնդիրն է, ինչպես ասաց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը. «Համագումարի գաղափարները հասցնել յուրաքանչյուր կոմունիստի, յուրաքանչյուր սովետական մարդու՝ այս է ոչ միայն պրոպագանդիստների, դասախոսների, զեկուցողների, այլև մեր բոլոր կուսակցական ակտիվիստների պատվավոր պարտքը։ Այդ աշխատանքի մեջ հարկավոր է ներդնել բոլոր գիտելիքները, համոզելու ամբողջ կարողությունը, հոգու ամբողջ ուժը» (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ., 1976, էջ 123)։

Այս խոսքերը որպես կուսակցության կոչ ընկալեցին նաև «Գիտելիք» ընկերության կազմակերպությունները, որոնք այսօր իրենց գլխավոր խնդիրն են համարում ՍՄԿԿ XXV համագումարի նյութերի ու որոշումների համակողմանի պրոպագանդան, դրանց խոր ուսումնասիրման կազմակերպումը։ Պետք է ասել, որ այդ նպատակով կազմակերպչական ու մասսայական-քաղաքական որոշակի աշխատանք արդեն կատարվում է։ «Գիտելիք» ընկերության հանրապետական վարչության նախագահությունը համագումարի որոշումների պրո-

Կուսակցության XXV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևն արդի փուլում տնտեսական հանգուցային պրոբլեմների շարքում կարևորեց նաև երկրի գյուղատնտեսության հետագա զարգացման պրոբլեմը: Դրա լուծման գործում վճռական նշանակություն ունի կուսակցության ագրարային քաղաքականության և գյուղատնտեսական գիտության նվաճումների ու առաջավոր փորձի պրոպագանդան, որը կարևոր տեղ ունի «Գիտելիք» ընկերության գործունեության մեջ: Հանրապետության շատ շրջաններում լայն տարածում են գտել դասախոսությունների ցիկլերի, սեմինարների, գիտա-պրակտիկ կոնֆերանսների կազմակերպումը, առաջավոր փորձի դպրոցները, գյուղատնտեսական գիտելիքների ուսումնասիրության ժողովրդական համալսարանները: Շատ օգտակար էր անցած տարվա մայիսին հրավիրված հանրապետական սեմինար-խորհրդակցությունը, որը նվիրված էր տասներորդ հնգամյակում Սովետական Հայաստանի գյուղատնտեսության զարգացման, նրա արդյունավետության բարձրացման խնդիրներին: Այս բնագավառում հիմնական ուշադրությունը նվիրում ենք լենինյան ագրարային քաղաքականության, գյուղատնտեսական արտադրության ինտենսիֆիկացման ու ինդուստրացման, ագրո-արդյունաբերական ինտեգրացիայի և միջտնտեսային կոոպերացիայի, գյուղատնտեսական աշխատանքի և արտադրության կառավարման կազմակերպումը բարելավելու հարցերին: Դրա կարևորությունը հաստատում է վերջերս հրապարակված ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը:

ՍՄԿԿ XXV համագումարը պահանջեց արմատապես բարելավել բնակչությանն սպասարկող կազմակերպությունների աշխատանքը: Այդ գործում լուրջ անելիքներ ունի նաև «Գիտելիք» ընկերությունը: Ընկերության կազմակերպությունների առաջնահերթ խնդիրն է՝ ուժեղացնել դասախոսական պրոպագանդան սպասարկման ոլորտի աշխատողների շրջանում: Հայաստանի կոմկուսի Կենտկոմը կուսկազմակերպությունների ուշադրությունը սևեռում է այդ օղակում դեռևս գոյություն ունեցող թերությունների վերացման վրա: Ընկերությունը պետք է հնարավորին չափ օգնի նրանց՝ բարձրացնելու սպասարկման ոլորտի բոլոր աշխատողների գաղափարական ու մասնագիտական մակարդակը:

Արդի փուլում կուսակցության առաջադրած կարևորագույն պրոբլեմներից է ժողովրդական տնտեսության կառավարման հետագա կատարելագործումը, որի նպատակն է՝ ավելի լրիվ օգտագործել զարգացած սոցիալիզմի էկոնոմիկայի առավելություններն ու հնարավորությունները: Հարկ է խոստովանել, որ ժողովրդական տնտեսության կառավարման պրոբլեմների պրոպագանդման ասպարեզում «Գիտելիք» ընկերության կատարած աշխատանքը դեռևս գոհացուցիչ չէ: Այդ նպատակով տարվող պրոպագանդան համարյա չի կապվում հանրապետության ձեռնարկությունների արտադրության պրակտիկ խնդիրների հետ, չի նպաստում դրանց կառավարման կատարելագործմանը, քանի որ այդ պրոպագանդան հաճախ վերացական բնույթ ունի: Մինչդեռ անհրաժեշտ է համոզիչ ու կոնկրետ օրինակներով ցույց տալ, թե ինչպես է սոցիալիստական էկոնոմիկայի կառավարման սիստեմն ազդում արտադրության արդյունավետության բարձրացման ու արտադրանքի որակի բարելավման, արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության պլանավորման կատարելագործման, գիտատեխնիկական առաջընթացի արագացման վրա: Ուստի, ժողովրդական տնտեսության կառավարման կատարելագործման պրոբլեմների պրոպագանդան պետք է գտնվի «Գիտելիք» ընկերության ամենօրյա ուշադրության կենտրոնում: Մեր պարտքն է այդ գործում ներգրավել ոչ միայն դասախոսներին ու գիտնականներին, այլև հենց իրենց՝ ժողովրդական տնտեսության հմուտ ղեկավարներին ու մասնագետներին, պրոպագանդիստական նոր, երիտասարդ կադրերին:

Կուսակցության XXV համագումարը, միահամուռ հավանություն տալով ՍՄԿԿ Կենտկոմի լենինյան արտաքին քաղաքականությանը, նշեց, որ Սովետական Միության միջազգային դրությունն ամուր է ավելի, քան երբևէ, սոցիալիզմի դիրքերն ամրապնդվել են, և ահա չորրորդ տասնամյակն է, ինչ մենք



ապրում ենք խաղաղության պայմաններում, որ լարվածության թուլացումը դարձել է առաջատար միտում, և այդ ամենը Սովետական Միության արտաքին քաղաքականության արդյունքն է, ու ապագան պատկանում է հենց այդ քաղաքականությանը: Հետևաբար, այս պրոբլեմների պրոպագանդան մեր գլխավոր խնդիրներից է: «Գիտելիք» ընկերությունը պատշաճ կերպով է լուծում այդ խնդիրը: ՍՄԿԿ և սովետական պետության արտաքին քաղաքական գործունեության հարցերի պրոպագանդան նկատելի տեղ է գրավում մեր ընկերության կազմակերպությունների աշխատանքում: Վերջին ժամանակներս որոշակի հարստացել է դասախոսական պրոպագանդայի բովանդակությունը, բարձրացել նրա գաղափարա-քաղաքական մակարդակը, ավելի բազմազան են դարձել պրոպագանդայի ձևերը, լայն տարածում են գտել դասախոսությունների ցիկլերը, միջազգային հարաբերությունների համալսարանները: Այս ողջ համակարգում կարևոր է միջազգայնագետ դասախոսների ուսուցման կազմակերպումը: Նրանցից շատերը մասնակցել են հանրապետական ու փնջային սեմինարներին, իսկ վերջին մեկ տարում միայն 60 մարդ բարձրորակ դասախոսություններ է լսել Կիևում հրավիրված համամիութենական սեմինարներում: Այս ամենը որոշակի արդյունք է տվել: Միայն անցյալ տարի հանրապետությունում միջազգային կյանքին վերաբերող թեմաներով կարդացվել է 12.300 դասախոսություն:

Մեր աշխատավորները բուռն հետաքրքրություն են հանդես բերում այն հսկայական քաղաքական ու սոցիալական վերափոխումների նկատմամբ, որ տեղի է ունենում աշխարհում, այն հետևողական պայքարի նկատմամբ, որ ՍՄԿԿ-ն և սովետական պետությունը մղում են հանուն խաղաղության ու միջազգային համագործակցության, հանուն ժողովուրդների ազատության ու անկախության:

Սակայն այս բնագավառում ևս քիչ չեն թերությունները: Առաջվա նման նեղ է դասախոսությունների թեմատիկան, պրոբլեմային դասախոսությունների տեսակարար կշիռը քիչ է, արտաքին քաղաքական պրոպագանդան հաճախ հայեցողական բնույթ է կրում, ոչ բոլոր դեպքերում է, որ այն դառնում է բուրժուական գաղափարախոսության նկատմամբ սովետական մարդկանց զգոնության և անհանդուրժողականության ոգով դաստիարակելու արդյունավետ միջոց: Դասախոսություններում և զեկուցումներում անհրաժեշտ է խորությամբ պարզաբանել խաղաղության և միջազգային համագործակցության համար հետագա պայքարի ծրագիրը, որ մշակել է կուսակցության XXV համագումարը և որը կուսակցության XXIV համագումարի առաջադրած ծրագրի օրգանական շարունակությունն ու զարգացումն է:

ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՄԵՋ նկատվող դրական տեղաշարժերը, միջազգային լարվածության թուլացումը բարենպաստ պայմաններ են ստեղծում սոցիալիզմի գաղափարների տարածման համար: Սակայն չպետք է մոռանալ, որ երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը դառնում է ավելի սուր, իսկ իմպերիալիստական պրոպագանդան՝ ավելի ճկուն ու խարդախ: Այս պայմաններում «Գիտելիք» ընկերության խնդիրն է՝ ավելի խելացի կազմակերպել բուրժուական գաղափարախոսության, ռևիզիոնիզմի և ռեֆորմիզմի քննադատությունը: Դասախոսների պարտքն է՝ համոզիչ կերպով ցույց տալ սովետական ապրելակերպի առավելությունները բուրժուականի նկատմամբ, սոցիալիզմի ու կապիտալիզմի պայմաններում մարդկանց սոցիալական ու քաղաքական իրավունքների, դեմոկրատիայի, ազատության ու բարոյականության տարբերությունը: Այս հարցերի կարևորությունը մեկ անգամ ևս ընդգծվեց վերջերս Բեռլինում կայացած Եվրոպայի երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ղեկավարների խորհրդակցությունում:

Կուսակցության XXV համագումարը մեծ ուշադրություն նվիրեց կուսակցության գաղափարական-քաղաքական աշխատանքի տեսական ու պրակտիկ հարցերին: Մենք լավ գիտենք, որ նոր մարդու ձևավորման միջոցներից են եղել և մնում են մարքսիզմ-լենինիզմի տեսության ուսումնասիրությունը և պրոպա-

ցանդան։ Եվ պետք է ասել որ «Գիտելիք» ընկերությունն անգնահատելի օգնություն է ցույց տալիս կուսկազմակերպություններին՝ մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի պրոպագանդման գործում։ ՍՄԿԿ պատմության և քաղաքականության, մարքս-լենինյան փիլիսոփայության, գիտական կոմունիզմի, գիտական աթեիզմի, կուսակցության մշակած տեսական հրատապ պրոբլեմների շուրջ կարդացվող դասախոսությունները և այլ միջոցառումներ իրենց ծավալով կազմում են ընկերության գործունեության, կարելի է ասել, առանցքը։

Կուսակցության XXV համագումարի որոշումներն ու նյութերը մեծ հնարավորություններ են ընձեռում մեր դասախոսներին՝ նոր ուժով ցուցադրելու մեր հասարակության կյանքում կուսակցության ղեկավար և ուղղություն տվող դերը, կուսակցական ղեկավարության արդյունավետությունը՝ կոմունիստական շինարարության բոլոր ասպարեզներում։ «Գիտելիք» ընկերության կազմակերպություններն իրենց ջանքերը պետք է նպատակամղեն սովետական հասարակության սոցիալ-քաղաքական հրատապ պրոբլեմների, զարգացած սոցիալիզմի օրինաչափությունների, կոմունիստական հարաբերությունների ձևավորման, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, սովետական սոցիալիստական ապրելակերպի զարգացման հարցերի պարզաբանմանը։

Հայտնի է, որ վերջին երկու տարիներին Հայաստանի կոմկուսակցության Կենտկոմը մշակել և իրականացնում է միջոցառումներ՝ մեզանում դեռևս գոյություն ունեցող, սոցիալիզմին խորթ ու անհարիր երևույթների դեմ պայքարելու նպատակով։ Այդ մասին լուրջ խոսակցություն եղավ նաև ՀԿԿ XXVI համագումարում։ Հետևաբար, համագումարի պահանջները պետք է գործողության ուղեցույց դառնան մեզ համար։

Մեր կադրերի, բոլոր աշխատավորների բարոյա-էթիկական դաստիարակության գործում մեծ անելիքներ ունեն «Գիտելիք»-ի կազմակերպությունները։ Այն, ինչ արվում է այդ նպատակով, առայժմ գոհացուցիչ չէ։ Դասախոսները և պրոպագանդիստները պետք է ավելի խոր լուսաբանեն սովետական ապրելակերպի բնորոշ գծերն ու առանձնահատկությունները, լայնորեն տարածեն լավագույն օրինակները, որոնք նպաստում են կոմունիստական բարոյականության արմատավորմանը, մարդկանց դաստիարակում բյուրոկրատիզմի, խուլիգանության, հարբեցողության, կաշառակերության, էգոիզմի և մեր հասարակությանը խորթ այլ երևույթների հանդեպ անհանդուրժողականության ոգով։ Կոմունիստական բարոյականության հարցերի պրոպագանդման գործում պետք է ներգրավել գիտակ դասախոսներին, գրականության և արվեստի գործիչներին, հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներին, աշխատանքի և պատերազմի հերոսներին։

ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ տեսության և պրակտիկայի հարցերում մեծ տեղ են զբաղեցնում պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության պրոբլեմները։ Մեր մարդկանց ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակությունը մեծ թափ ստացավ ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի, Հայրենական մեծ պատերազմում գերմանական ֆաշիզմի դեմ տարած հաղթանակի 30-ամյակի նախապատրաստման ու անցկացման ժամանակ։ Բայց այդ աշխատանքը չպետք է կամպանիայի բնույթ կրի։ Աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության, ժողովուրդների բարեկամության ամրապնդման հարցերը պետք է լինեն մեր ամենօրյա պրոպագանդայի բաղկացուցիչ մասը։ Անհրաժեշտ է վճռական հակահարված տալ նացիոնալիստական ու շովինիստական ամեն մի դրսևորմանը։ Աշխատավորներին, հատկապես երիտասարդ սերնդին, խորապես տոգորել սովետական հայրենասիրության, սովետական հայրենիքի նկատմամբ հպարտության զգացումի ոգով, սոցիալիստական հայրենիքը կրծքով պաշտպանելու ոգով։ Այդ գործում չպետք է մոռանալ աշխատավորների ռազմա-հայրենասիրական դաստիարակության խնդիրը, հարկավոր է նրանց ծանոթացնել սովետական զինված ուժերի քաջագործությունների պատմությանը, սովետական բանակի այսօրվա խնդիրներին, այդ գործում համագործակցել կոմերիտական կազմակերպությունների, ԴՕՍԱԱՖ-ի հետ։



Աշխատավորների կոմունիստական դաստիարակության, սովետական մարդկանց հոգևոր կյանքի հարստացման գործում նշանակալի է գրականության և արվեստի դերը։ Ցավոք, պետք է նշել, որ «Գիտելիք»-ի շուրջը համախմբված մեր ստեղծագործական մտավորականությունը դեռևս անբավարար է մասնակցում մարդկանց գեղագիտական դաստիարակության նպատակով կիրառվող մեր միջոցառումներին։ Կուսակցության համագումարը մեզնից պահանջեց՝ բարելավել մարքսիստական-լենինյան էսթետիկայի, գրականության կուսակցականության, ժողովրդայնության, դասակարգայնության պրոբլեմների պրոպագանդան, աշխատավորներին դաստիարակել սովետական բազմազգ գրականության ու արվեստի լավագույն օրինակներով։

Տասներորդ հնգամյակը կուսակցությունը հռչակել է որպես բարձր արդյունավետության ու որակի հնգամյակ։ Դա ամբողջությամբ վերաբերում է նաև գաղափարական բնագավառի բոլոր աշխատողներին, այդ թվում նաև «Գիտելիք» ընկերությանը։ Կուսակցությունը ցույց է տվել այն ուղին, որով կարելի է հասնել գաղափարական աշխատանքի արդյունավետության բարձրացմանը։ Դա դաստիարակչական ողջ աշխատանքի կազմակերպմանը ցույց տրվող կոմպլեքսային մոտեցումն է, այսինքն՝ գաղափարական-քաղաքական, աշխատանքային ու բարոյա-էթիկական դաստիարակության սերտ միասնության ապահովումը, հաշվի առնելով բնակչության տարբեր խավերի առանձնահատկությունները։ Այս խնդիրը կարելի է լուծել բարձրորակ գաղափարական կադրերի, լավ դասախոսների առկայության ու նրանց ակտիվ գործունեության դեպքում միայն։ Իսկ մենք բավականաչափ ուժեր ունենք։ Հայկական ՍՍՀ «Գիտելիք» ընկերության շուրջն այսօր համախմբված են ՍՍՀՄ և Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիաների 60 ակադեմիկոսներ ու 65 թղթակից-անդամներ, 520 գիտությունների դոկտորներ, 2.150 գիտության թեկնածուներ, հարյուրավոր կուսակցական ու սովետական աշխատողներ, բարձրորակ մասնագետներ։

Ինչպես տեսնում ենք, վիճակագրական առումով, պատկերը բավական լավ է։ Բայց հիշատակված ակադեմիկոսներից, գիտության դոկտորներից ու թեկնածուներից շատերը միայն դեպքից-դեպք են մասնակցում դասախոսական պրոպագանդային, որի հիմնական ծանրությունն ընկնում է ընկերության շարքային անդամների վրա։ Հանրապետության հեռավոր քաղաքներն ու շրջանները պետք է դառնան մեր ականավոր գիտնականների ու ճանաչված դասախոսների հաճախակի այցելության վայրերը, ուր նրանց սպասում են հարյուրավոր ու հազարավոր հետաքրքրասեր ունկնդիրներ։

Արդի պայմաններում, երբ նկատելիորեն բարձրացել է սովետական մարդկանց կրթական մակարդակը, իրազեկությունն աշխարհի անց ու դարձին, նոր պահանջներ են ներկայացվում մասսաների շրջանում կատարվող ողջ աշխատանքին, այդ թվում նաև դասախոսական պրոպագանդային։ Առավել մեծանում է «Գիտելիք» ընկերության դերը աշխատավորների կոմունիստական դաստիարակության, նրանց քաղաքական ու աշխատանքային ակտիվության բարձրացման գործում։

Հանրապետական «Գիտելիք» ընկերությունը, որն իր շարքերում ունի մոտ 20.400 գիտնականներ, ժողովրդական տնտեսության մասնագետներ, բուհերի դասախոսներ, գիտա-հետազոտական ինստիտուտների աշխատողներ, գրականության, կուլտուրայի և արվեստի գործիչներ, դարձել է գաղափարական աշխատանքի կարևոր օղակ և հանդիսանում է Հայաստանի կոմկուսակցության հուսալի օգնականը աշխատավորների կոմունիստական դաստիարակության ասպարեզում։ Ընկերության գործունեության մեջ կարևոր տեղ են գրավում պրոպագանդայի, գիտելիքների տարածման՝ փորձով արդարացված այնպիսի ձևեր, ինչպիսիք են՝ դասախոսությունների ցիկլերը, հասարակական-քաղաքական ընթերցումները, լեկտորիումները, բանավեճերի երեկոները, ժողովրդական համալսարանները։ Այսօր Սովետական Հայաստանում գործում են 427 ժողովրդական համալսարաններ, ուր սովորում են մոտ 170 հազար ունկնդիրներ։ 1976 թ. ժողովրդական համալսարանների ավարտական վկայականներ ստացան ժողտնտեսության տարբեր բնագավառների 51 հազար աշ-

խատողներ։ Հանրապետությունում այժմ դասախոսական պրոպագանդայով են զբաղվում «Գիտելիք» ընկերության 1.443 սկզբնական կազմակերպություններ։ Վերջին ժամանակներս դրանք կազմակերպչորեն որոշակի ամրապնդվել են, գործնականորեն դարձել ավելի ակտիվ։ Գործի շահերը պահանջում են բարձրացնել նրանց աշխատանքի մակարդակը, ամենօրյա կազմակերպչական ու մեթոդական օգնություն ցույց տալ, ուսումնասիրել և տարածել դրական փորձը։

Ի ղեկավարություն ընդունելով «Բելոռուսիայի կուսակցական կազմակերպությունում գաղափարական կադրերի ընտրության և դաստիարակության ասպարեզում տարվող աշխատանքի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի հայտնի որոշումը՝ Հայաստանի «Գիտելիք» ընկերության վարչությունը որոշ աշխատանք է կատարել դրա կենսագործման բնագավառում։ Սակայն այդ արածով բավարարվել չի կարելի։ Մենք մշակում ենք դասախոսական կադրերի ու հաստիքային աշխատողների պատրաստման ու վերապատրաստման միջոցառումների հեռանկարային պլան։ Գաղտնիք չէ, որ առանց բարձրորակ դասախոսական կադրերի, հնարավոր չէ ապահովել դասախոսական պրոպագանդայի գաղափարական-տեսական բարձր մակարդակ։

1976 թ. տեղի ունեցավ ՀԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումը, որը քննարկեց «Դաստիարակչական աշխատանքի հետագա ուժեղացման ուղղությամբ հանրապետության կուսակցական կազմակերպության խնդիրները ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի ներքո» հարցը։ Պլենումը մեկ անգամ ևս շեշտեց դաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման անհրաժեշտությունը։

«Գիտելիք» ընկերության կազմակերպությունների ուշադրության կենտրոնում պետք է լինի պլենումի այն դրույթը, որ մեր գաղափարա-դաստիարակչական գործունեությունը հարկավոր է նպատակամղել, ամենից առաջ, ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած սոցիալ-տնտեսական ծրագրի համակողմանի իրականացմանը։

«Արդյունավետության և որակի համար պայքարը նշանակում է, որ յուրաքանչյուր կոմունիստ, յուրաքանչյուր կուսակցական կազմակերպություն պետք է ըստ ամենայնի խրախուսի ու տարածի իրոք գործնական և օգտակար նախաձեռնությունները, վճռականորեն վերացնի այն ամենը, ինչը խանգարում է ստեղծագործական մտքի բաբախյունին, նորարարությանը, խանգարում մեր առաջընթացին»— ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումում Լ. Ի. Բրեժնևի ասած այս խոսքերը լիովին վերաբերում են նաև «Գիտելիք» ընկերության կազմակերպություններին, մեր բոլոր դասախոսներին։

Անցած տարվա նոյեմբեր ամսից սկսվեցին «Գիտելիք» ընկերության սկզբնական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները, իսկ դեկտեմբերից՝ քաղաքային ու շրջանային կազմակերպությունների կոնֆերանսները։ Դրանք անցնում են ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործման, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցման դրույթների ու եզրակացությունների պարզաբանման, դասախոսական պրոպագանդայի գաղափարական, տեսական ու քաղաքական մակարդակի բարձրացման համար «Գիտելիք» ընկերության գործունեությունն ակտիվացնելու նշանաբանով։ Այդ ժողովներն ու կոնֆերանսները, անշուշտ, կնպաստեն քննադատության ու ինքնաքննադատության զարգացմանը, ընկերության գործունեության ձևերի ու մեթոդների կատարելագործմանը, հանրապետության աշխատավորական կոլեկտիվների առջև ծառացած խնդիրների անվերապահ լուծմանը։

# ՆՈՐ ՏԻՊԻ ԱՇԽԱՏՈՂԻ ԿԱԶՄԱՎՈՐՄԱՆ ՀԱՐՑԻ ՇՈՒՐՋ

**Տ. Գ. ԳՐԻԳՈՐՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու, դոցենտ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ կոմունիստական կուսակցության XXIV և XXV համագումարների որոշումներում պատշաճ տեղ է հատկացվում նոր մարդու, մասնավորապես նոր տիպի աշխատողի ձևավորման հարցերին։

Հետևողականորեն կենսագործելով ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման իր հոյակապ ծրագիրը, կուսակցությունը ելնում է այն բանից, որ դա առավել չափով կնպաստի աշխատավորների հոգևոր աճին, նրանց ստեղծագործական ունակությունների համակողմանի զարգացմանը։

«Այդպիսի մոտեցումը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարում,— բխում է ո՛չ միայն աշխատանքի նյութական ու բարոյական խթանների դերի հետագա ուժեղացման մեր գծից։ Հարցն զգալիորեն ավելի լայն է դրվում՝ ստեղծել սովետական մարդկանց, բոլոր աշխատավորների ընդունակությունների, ստեղծագործական ակտիվության համակողմանի զարգացմանը նպաստող պայմաններ, այսինքն՝ զարգացնել հասարակության գլխավոր արտադրողական ուժը» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 54)։

Սույն հոդվածում ընդհանուր գծերով քննարկվում են նոր տիպի աշխատողի՝ մասնավորապես նյութական արտադրության մեջ աշխատողի ձևավորման մի քանի հարցեր։

Կոմունիստական կուսակցության ղեկավար դերի կարևոր առանձնահատկություններից մեկը՝ պատմական զարգացման կոնկրետ փուլի պահանջներին համապատասխան հասարակական կազմակերպությունների գործունեության ձևերի ու միջոցների կատարելագործումն է։ Մշակելով երկրի տնտեսական և կուլտուրական զարգացման պլանները, կուսակցությունը մշտապես ղեկավարվել ու ղեկավարվում է լենինյան հայտնի ցուցումներով՝ կոնկրետ մոտեցում ունենալ սոցիալ-տնտեսական բոլոր պրոբլեմների լուծման նկատմամբ։ Նման մոտեցում է ցուցաբերել կուսակցությունը նաև նոր, սոցիալիստական տիպի աշխատողի ձևավորման խնդրում։ Մեր երկրում բանվորական կադրերի պատրաստման գործն ունեցել է զարգացման երեք գլխավոր փուլեր։

Առաջին հնգամյակների տարիներին (մոտավորապես մինչև 30-ական թվականների երկրորդ կեսը) բանվորական կադրերի պատրաստման գործում կարևոր դեր խաղացին լենինյան կոմերիտմիության նախաձեռնությամբ ըստեղծված ֆաբրիկա-գործարանային ուսումնարանները (ФЗУ)։ Հենց դրանք հանդիսացան երիտասարդությանը բանվորական մասնագիտություններ սովորեցնելու առաջին դպրոցները, ապահովելով այդ ժամանակաշրջանի մեր արդյունաբերությունը քաղաքականապես և տեխնիկապես գրագետ բանվորական կադրերով։ Այդ ուսումնարանները, որոնք զինում էին իրենց սաներին պատշաճ պրոֆեսիոնալ գիտելիքներով և ունակություններով, կարճ ժամանակում

նվաճեցին բանվոր-երիտասարդության սերն ու հարգանքը: Դրանք էլ հենց կյանքի ուղեգիր տվին առաջին ստախանովականներին:

Մեր երկրում սոցիալիզմի հաղթանակից հետո հարկ եղավ արդյունաբերության տարբեր ճյուղերի համար պատրաստել ավելի որակյալ և մասնագիտացված բանվորներ: Այդ խնդիրը հաջողությամբ կատարեցին պետական աշխատանքային ռեզերվների դպրոցները: Մի քանի հնգամյակների ընթացքում դրանք պատրաստեցին 20 միլիոն որակյալ բանվորներ: Հազարավոր լավագույն մասնագետներ՝ արտադրության նորարարներ, գյուտարարներ և ռացիոնալիզատորներ ժողովրդական տնտեսության մեջ ներդրեցին բազմաթիվ առաջարկներ՝ երկրին տալով միլիարդների խնայողություն:

Բանվորական կադրերի պատրաստման երրորդ փուլն առնչվում է գիտատեխնիկական հեղափոխության առաջին նվաճումների հետ: Դրա խնդիրները սահմանվեցին ՍՄԿԿ ծրագրով, որտեղ ասվում է. «Գիտության և տեխնիկայի բուռն զարգացման կապակցությամբ պետք է անընդհատ կատարելագործել պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության և արտադրական ուսուցման սիստեմը, այն հաշվով, որ արտադրության մեջ աշխատողների վարպետությունը զուգորդվի հասարակական և բնական գիտությունների բնագավառում նրանց հանրակրթական պատրաստության բարձրացման ու ինժեներա-տեխնիկական, ագրոնոմիական, բժշկական կամ այլ մասնագիտական գիտելիքներ ստանալու հետ» (ՍՄԿԿ ծրագիրը, «Հայաստան» հրատ., 1974, էջ 194—195):

Պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության սիստեմի զարգացման ու կատարելագործման աշխատանքները մեզ մոտ այժմ ծավալվել են աննախընթաց թափով: Մեր երկրում ներկայումս գործում են 6356 պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններ, որտեղ ուսուցվում են 1.100 մասնագիտություններ: Յուրաքանչյուր սովորող այդ ուսումնարաններում կարող է որակավորվել մեկ կամ մի քանի մասնագիտությամբ: Տարեցտարի աճում է նաև այն ուսումնարանների թիվը, որոնցում սովորողները միաժամանակ ստանում են և՛ մասնագիտություն, և՛ միջնակարգ կրթություն: Երիտասարդությունը գիտե, որ այժմ առանց առնվազն միջնակարգ կրթության և համապատասխան պրոֆեսիոնալ որակավորման հնարավոր չէ կառավարել ժամանակակից բարդ մեքենաներն ու հաստոցները: Պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթության մեր ներկա սիստեմի նպատակն է ո՛չ միայն պարզապես որակյալ բանվորական կադրերի պատրաստումը, այլև բազմակողմանի զարգացած, լայն մտահորիզոն ունեցող այնպիսի աշխատողների դաստիարակումը, որոնք ընդունակ լինեն տիրապետելու մշտապես զարգացող նոր տեխնիկային, ճիշտ կողմնորոշվելու շարունակ փոփոխվող տեխնիկայի պայմաններում:

Դժվար չէ նկատել, որ պրոֆեսիոնալ կրթության նոր սիստեմը, թեև նմանությամբ ու ձևով հիշեցնում է բանվորական կադրերի պատրաստման առաջին, ելակետային այն ձևերը, երբ ֆաբրիկա-գործարանային ուսումնարանները դեռևս թույլ զարգացած մեր արդյունաբերության համար պատրաստում էին նույնպես «լայն» պրոֆիլի բանվորներ, սակայն էությամբ ու բովանդակությամբ արմատապես տարբերվում է դրանցից և հենվում է պատմականորեն այլ արտադրատեխնիկական, հանրակրթական ու գիտական հիմքերի վրա:

ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ուշագրավ արդյունքներից մեկն այն է, որ արտադրության մեքենայացման և ավտոմատացման գիտական հիմունքների հետազոտության հարցերով զբաղվող աշխատողների թիվը համեմատաբար ավելի արագ է աճում, քան նոր տեխնիկան արտադրության մեջ պրակտիկորեն օգտագործող բանվորների թիվը: Դա օրինաչափ երևույթ է մեր ժամանակի համար: Բայց երբեմն այն ճիշտ չի մեկնաբանվում երիտասարդությանը և թյուրիմացությունների տեղիք է տալիս: Հատկապես թյուր է այն ենթադրությունը, թե գիտատեխնիկական հեղափոխության հետևանքով արտադրության մեջ անմիջականորեն աշխատողները հետզհետե կփոխադրվեն մտավոր աշխատանքի ոլորտը՝ իրենց տեղը լրովին զիջելով մեքենաներին: Դա մոլորություն է:



Գիտատեխնիկական հեղափոխությունը, իհարկե, վճռական ազդեցություն է թողնում աշխատանքի ու աշխատողի վրա: Այն, ինչպես նորից նշվեց ՍՄԿԿ XXV համագումարում, փոխում է աշխատանքի, հետևաբար և աշխատանքի համար մարդու նախապատրաստման բնույթը: Այդ նշանակում է, որ սոցիալիզմի պայմաններում այն, իրոք, զգալիորեն նպաստում է մտավոր ու ֆիզիկական աշխատանքի մերձեցմանը և վերափոխմանը՝ ստեղծագործական բնույթ հաղորդելով վերջինիս: Աշխատողը ոչ թե իր ֆունկցիաները զիջում է մեխանիզմներին, այլ դառնում է դրանց անմիջական ղեկավարն ու հրամանատարը: Զնսեմացնելով արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման նշանակությունը, անհրաժեշտ է շեշտել, որ մարդկային գործունեության շատ ոլորտներում ամենախելոք մեքենան նույնիսկ չի կարող կատարել մարդու գլխի ու ձեռքի աշխատանքը:

Նոր տիպի աշխատողի պատրաստման գործում մեծ է գիտատեխնիկական հեղափոխության ներգործության նշանակությունը, այն մարդուն չի ազատում ֆիզիկական աշխատանքից, այլ պահանջում է դրա ամենաբարենպաստ զուգակցումն ու ներդաշնակությունը մտավոր գործունեության հետ: Այդ առթիվ Լ. Ի. Բրեժնևը ՀամԼԿԵՄ XVII համագումարում շեշտեց. «Աճում է արտադրության նոր տիպի աշխատող, նրանում ավելի ու ավելի ներդաշնակորեն է զուգորդվում ֆիզիկական և մտավոր աշխատանքը: Դա պրոֆեսիոնալ լայն մտահորիզոն ու վարպետություն, ժամանակակից արտադրության պոլիտեխնիկական հիմքերի խորիմացություն ունեցող մարդն է, որն ընդունակ է արագ յուրացնելու նորագույն մեքենաներն ու տեխնոլոգիական պրոցեսները» (Լ. Ի. Բրեժնև, Աշխատավորների կոմունիստական դաստիարակության մասին, «Հայաստան» հրատ., 1974 թ., էջ 721):

Կոմունիստական շինարարության պրակտիկան ցույց է տալիս, որ գիտության և տեխնիկայի ազդեցությամբ բարեփոխված ֆիզիկական աշխատանքը, որքան էլ որ այն միավորվում է մտավորի հետ ու փոխվում է իր բնույթով, ներկա սերունդների տեսանելի ապագայում նույնպես չի կորցնի կարևորագույն իր առանձնահատկությունը՝ աշխատանքի առարկայի և գործիքի հետ անմիջական կամ միջնորդված հաղորդակցության առկայությունն ու անհրաժեշտությունը: Բանն այն է, որ բազմապիսի մեքենաների ու սարքավորումների արտադրությունը, հսկայական կառույցների շինարարությունը, ինչպես և սպասարկման ոլորտի աշխատանքային շատ պրոցեսներ հնարավոր չի լինի լրովին և անմնացորդ ավտոմատացնել. դրանք միշտ և անխուսափելիորեն կապված կլինեն այս կամ այն տեսակի ֆիզիկական աշխատանքի հետ: Պրակտիկան ցույց է տալիս, որ աշխատանքի առարկայի և գործիքի հետ անմիջական հաղորդակցությունն անխուսափելի է նաև հենց մտավոր աշխատանքի շատ ներկայացուցիչների համար: Խոսքն այստեղ վերաբերում է արտադրության և գիտության, բանվորի ու ինժեներա-տեխնիկական աշխատողի, ինչպես և այլ կարգի աշխատողների փոխհարաբերության՝ երկուստեք յուրահատուկ այն պրոցեսին, որը համարյա միշտ տեղի է ունենում, այսպես ասած, «ներքևից-վերև» կամ «վերևից-ներքև», երբ, ասենք, բանվորն ակտիվորեն մասնակցում է այս կամ այն հարցի ինժեներական լուծմանը, կամ գիտնականինժեները, կոնստրուկտորը, ստեղծելով նոր մեքենա, պրակտիկորեն մասնակցում է արտադրության մեջ դրա օգտագործմանը:

Ինչպես հայտնի է, այդ հնարավորությունը նախատեսել է դեռևս Մարքսը, նշելով, որ «...բանվոր դասակարգի կողմից քաղաքական իշխանության անխուսափելի նվաճումը տեխնոլոգիական թե՛ թեորիական և թե՛ գործնական ուսուցման համար էլ պատշաճ տեղ կնվաճի բանվորական դպրոցներում» և անհրաժեշտ կլինի «...մասնագործ բանվորին, հասարակական մասնական որոշ ֆունկցիայի այդ սոսկական կրողին, փոխարինել բազմակողմանիորեն զարգացած անհատով, որի համար տարբեր հասարակական ֆունկցիաները կենսագործունեության միմյանց հաջորդափոխող եղանակներ են» (Կապիտալ, հ. 1, «Հայաստան» հրատ., 1954, էջ 512):

Աշխատողների ֆիզիկական և մտավոր ջանքերի այդ կարգի հերթագա-

յումն ու զուգակցումը, որ հնարավոր է դառնում միայն սոցիալիստական արտադրահարաբերությունների հիման վրա, մեծ նշանակություն ունի մարդու համակողմանի զարգացման համար։

Երիտասարդության աշխատանքային դաստիարակության հարցում ևս մեր ուսումնական հաստատությունները պետք է ղեկավարվեն կուսակցության XXV համագումարի կողմից առաջադրված սկզբունքով. դաստիարակության ամբողջ գործի դրվածքի նկատմամբ ևս հանդես բերել կոմպլեքսային մոտեցում, այսինքն՝ «...գաղափարա-քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնություն՝ հաշվի առնելով աշխատավորության զանազան խմբերի առանձնահատկությունները» (Լ. Ի. Բրեժնև, ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում, «Հայաստան» հրատ., 1976, էջ 122)։

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ որոշումներում և փաստաթղթերում նախատեսվում է տասներորդ հնգամյակում ավելի քան երկու անգամ ավելացնել սովորողների ընդունելությունը միջնակարգ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններում և տեխնիկումներում։

Բացի դրանից, նախատեսվում է պատրաստել բարձրագույն և միջնակարգ կրթությամբ 9,6 մլն մասնագետներ։ Միայն Հայաստանում ընթացիկ հնգամյակում պլանավորվում է պատրաստել 125,2 հազար մասնագետներ, այդ թվում բարձրագույն կրթությամբ՝ 50,2 հազար և միջնակարգ կրթությամբ՝ 75 հազար։ Այդ նույն ժամանակաընթացքում հանրապետության պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններ կընդունվեն 140 հազար պատանիներ և աղջիկներ, ըստ որում՝ 50 հազարը միջնակարգ կրթության բազայի վրա։

Այսպիսով, նոր հնգամյակում կստեղծվեն բոլոր պայմանները աշխատավորների նոր կադրեր պատրաստելու համար։ Կրկին և ավելի սուր կերպով առաջին պլան է մղվում նոր տիպի աշխատողի պատրաստման որակի հարցը։ Այն պետք է ավելի լիովին բավարարի ժամանակակից գիտատեխնիկական հեղափոխության պահանջները։ Որակի պրոբլեմի դրական լուծումը, ըստ էության, մեծ չափով կնպաստի նաև ամբողջությամբ վերցրած հասարակության գլխավոր արտադրաուժի քանակի պրոբլեմի լուծմանը։ Այստեղ նույնպես ամեն ինչ կատարվում է դիալեկտիկայի օրենքների համաձայն. ոչ միայն քանակն է փոխվում որակի, այլև որակը որոշ պայմաններում փոխվում է քանակի։ Այդ միանգամայն համոզիչ ցույց տվեց Լ. Ի. Բրեժնևը դեռևս կուսակցության XXIV համագումարում։ «Ներկա պայմաններում,— ասել է նա,— եթե նկատի ունենանք ամբողջ ժողովրդական տնտեսության համար ստացվող արդյունքը, ավելի լավը համարյա միշտ նշանակում է նաև ավելի շատ։ Ծրագրային կառավարումով մեկ ժամանակակից հաստոցը փոխարինում է հնացած կոնստրուկցիայի տասնյակ հաստոցների, ծանրաբեռ մեկ ավտոմոբիլը՝ մի քանի սովորական բեռնատարների, մեծացված ռեսուրսով մեկ ինքնաթիռային շարժիչը՝ նախկին տիպի երկու-երեք շարժիչի» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 78)։

Ժողովրդական տնտեսության համար այդպիսի արդյունք կարող է տալ բարձր տեխնիկան, իհարկե, եթե այն վարում է համապատասխանորեն բարձր որակավորում ունեցող աշխատողը։ Ավտոմատ գծի բարձրորակ մեկ կարգավորողը, էլեկտրոնային հաշվիչ մեքենայի մեկ օպերատորը և կամ սինթետիկ նյութերի արտադրության մեկ ապարատավարը կարող է փոխարինել ցածր որակավորում ունեցող աշխատողների մի ամբողջ օղակի կամ բրիգադի։ Դրանում համոզվելու համար կարելի է շատ օրինակներ բերել։

Հասկանալի է, ուրեմն, թե ինչու կուսակցության XXIV և XXV համագումարներում առավել սուր կերպով դրվեց որակի պրոբլեմը։ Տասներորդ հընգամյակը որակի և արդյունավետության հնգամյակ է ո՛չ միայն հասարակական արտադրության աճի, ժողովրդական տնտեսության բոլոր օղակներում աշխատանքի որակի բարելավման տեսակետից։ Այն որակի և արդյունավետության



հնգամյակ է նաև նոր տիպի աշխատողի պատրաստման, ժողովրդական կրթության ամբողջ սիստեմի, նրա բոլոր օղակների աշխատանքի լավացման և կատարելագործման տեսակետից, մի հարց, որն առանձին կարևորություն է ստանում այսօր, գիտատեխնիկական հեղափոխության պայմաններում։

Գիտնականները պարզել են, որ գիտատեխնիկական հեղափոխության ներկա փուլում գիտական ինֆորմացիան կրկնապատկվում է, ըստ էության, յուրաքանչյուր 7—8 տարին մեկ։ Յուրացնել գիտելիքների հսկայական այդ հեղեղը ո՛չ հնարավոր է և ո՛չ էլ նպատակահարմար, քանի որ դրանք շատ արագ «հնանում են» և կորցնում իրենց արժեքը։ Ուստի, անհրաժեշտ է, որպեսզի երիտասարդ մասնագետը ձգտի ո՛չ թե իր գիտելիքների ծավալի առավել ընդլայնմանը, այլ աշխատի տիրապետել ամենից առաջ այն հիմնական գիտելիքներին, որոնք թույլ են տալիս ինքնուրույն կերպով նոր գիտելիքներով լրացնել իր ինտելեկտուալ պաշարը՝ ազատորեն կողմնորոշվել հարաճուն գիտական և քաղաքական ինֆորմացիայում։

«Արդի պայմաններում, երբ մարդուն անհրաժեշտ գիտելիքների ծավալը խիստ և արագորեն աճում է,— ասել է Լ. Ի. Բրեժնևը կուսակցության XXV համագումարում,— այլևս անկարելի է գլխավոր շեշտը դնել փաստերի որոշակի քանակության յուրացման վրա։ Կարևոր է իրենց գիտելիքներն ինքնուրույն համալրելու, գիտական ու քաղաքական ինֆորմացիայի սրընթաց հոսանքի մեջ կողմնորոշվելու ունակության պատվաստումը» (ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հաշվետվությունը..., էջ 127)։

Գիտատեխնիկական հեղափոխությունը, որ հենվում է ժամանակակից գիտության, մասնավորապես կիբեռնետիկայի, ֆիզիկայի, մաթեմատիկայի նվաճումների վրա, սոցիալիզմի պայմաններում ո՛չ միայն չի նսեմացնում բանվորի, ամբողջությամբ վերցրած բանվոր դասակարգի դերն ու նշանակությունը արտադրության մեջ և ամբողջ սոցիալական կյանքում, այլև ենթադրում է նրանց դերի, հանրակրթական ու պրոֆեսիոնալ կուլտուրայի հետագա բարձրացում։ Այդ հաստատվում է մեր հասարակության սոցիալ-քաղաքական զարգացման փորձով, որտեղ բանվոր դասակարգը, շնորհիվ իր բարձր կուլտուրայի, կազմակերպվածության և կարգապահության, առաջատար տեղ է գրավում սոցիալիստական հասարակական հարաբերությունների սիստեմում։

Հաշվի առնելով կոմունիստական շինարարության կարևորագույն խնդիրներն ու պահանջները, մեր կուսակցությունը շարունակ հոգում է, որպեսզի սոցիալիստական արտադրությունն ապահովվի բարձրագույն մասնագիտական կրթությամբ ղեկավար կադրերով և որպեսզի ըստ ամենայնի աճի անմիջականորեն արտադրության մեջ աշխատողների կուլտուր-տեխնիկական մակարդակը։ Այս երկու կարգի աշխատողների ձևավորումը, նրանց ընդհանուր զարգացումն ու պրոֆեսիոնալ կատարելագործումը փոխադարձաբար պայմանավորում են միմյանց և խթանում միմյանց զարգացումը։ Հետևելով այդ պրոցեսի ընթացքին և դրանից բխող հետևանքներին, դժվար չէ տեսնել, թե ինչպիսի բարդ ու պատասխանատու խնդիրներ են ծառանում մեր բուհերում այժմ սովորող ուսանողների՝ սոցիալիստական արտադրության ապագա կազմակերպիչների ու ղեկավարների առջև։

Փորձենք պատկերացնել այսօր արդեն պարզ տեսանելի նրանց մոտակա հեռանկարը։ Տարեցտարի, ինչպես արդեն նշվեց, արագ տեմպերով աճում է միջնակարգ կրթություն ունեցող և ուսումը շարունակող երիտասարդ բանվորների թիվը։ Դրանց շարքերն անընդհատ խտանում են։ Ոչ մի կասկած չի կարող լինել, որ կարևորագույն այն պահանջները, որոնք ներկայացվում են պրոֆեսիոնալ-տեխնիկական և այլ ուսումնարաններին, ժամանակին կկատարվեն։

Կուսակցության XXV համագումարի որոշումների համաձայն, պետք է նշանակալիորեն ավելի ամրապնդվի այդ ուսումնարանների նյութա-տեխնիկական բազան և բարձրացվի դրանց աշխատանքի որակն ու արդյունավետությունը։ Արդեն այսօր շատ պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարաններ, տեխնիկումներ իրենց շեֆերի՝ բազային ձեռնարկությունների օգնությամբ լուրջ հաջողություններ են ձեռք բերել կաբինետներն ու լաբորատորիաներն ու-

սուցման անհրաժեշտ պարագաներով սարքավորելու, մասնագիտական ու հանրակրթական առարկաների դասավանդման որակը բարձրացնելու գործում։

Մի խոսքով, բոլոր տվյալները կան, որպեսզի մոտակա տարիներին, արդեն հենց տասներորդ հնգամյակում մեր ժողովրդական տնտեսությունն ստանա բարձրորակ բանվորների մի նոր սերունդ՝ զինված նոր գիտական գիտելիքներով և ունակություններով, բարձր կոմունիստական գիտակցականությամբ։ Ահա աշխատողների այդ նոր սերնդի հետ էլ, որպես նրանց ղեկավարներ ու դաստիարակներ, պետք է աշխատեն բուհերից եկած նոր մասնագետները։ Դժվար չէ կանխատեսել, թե ինչպիսի պատվավոր, բայց և բարդ ու պատասխանատու աշխատանք է սպասում այդ մասնագետներին։ Այն կպահանջի նրանցից ո՛չ միայն խոր ու բազմակողմանի գիտելիքներ, այլև աշխատանքի բարձր կուլտուրա, հմուտ ղեկավարի ու դաստիարակի հատկանիշներ, ընդունակություն՝ գիտական հիմունքներով կազմակերպելու տեղամասի աշխատանքը։

Կուսակցության XXV համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևը համոզիչ կերպով ուրվագծեց նոր, սովետական ղեկավարի կերպարը. «Ժամանակակից ղեկավարը պետք է իր մեջ կուսակցականությունը օրգանապես զուգորդի խոր բանիմացության հետ, կարգապահությունը՝ նախաձեռնության հետ և գործի նկատմամբ ստեղծագործական մոտեցման հետ։ Միաժամանակ, ղեկավարը պարտավոր է ցանկացած տեղամասում հաշվի առնել նաև սոցիալ-քաղաքական, դաստիարակչական կողմերը, զգայուն լինի մարդկանց նկատմամբ, նրանց կարիքների ու պահանջմունքների նկատմամբ, օրինակ ծառայի աշխատանքում և կենցաղում» (Նույն տեղը, էջ 115—116)։

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ մի բնորոշ առանձնահատկությունն այն է, որ նրա այն ճյուղերում, որտեղ ինտենսիվ կերպով արմատավորվում են արտադրական պրոցեսների մեքենայացումն ու ավտոմատացումը, տեղի է ունենում աշխատողի մասնագիտական պրոֆիլի ընդլայնում։ Այդ, բնականաբար, հասցնում է ունիվերսալ պրոֆեսիաների տեսակարար կշռի բարձրացմանը և հնացած նեղ պրոֆեսիաների ու մասնագիտությունների վերացմանը։ Բայց սխալ կլինի այդ պրոցեսը դիտել որպես ընդհանրապես պրոֆեսիաների աստիճանական կրճատման անդարձելի տենդենց, աշխատանքի պրոֆեսիոնալ բաժանման և մասնագիտացված լիկվիդացում։ Աշխատանքի ու պրոֆեսիայի ինտեգրացիայի հետ միասին տեղի է ունենում նաև դրանց մասնագիտացում, նոր պրոֆեսիաների առաջացում և որոշ հին պրոֆեսիաների վերափոխում։ Դրան ապացույց կարող է ծառայել այն, օրինակ, որ այսօրվա մեր պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանները, ինչպես նշեցինք, պատրաստում են հազարից ավելի պրոֆեսիայի մասնագետներ։ Պրոֆեսիաների ինտեգրացիայի և մասնագիտացման այդ կապն ու փոխադարձ պայմանավորվածությունը չի հակասում աշխատանքի փոփոխման օրենքին և աշխատողի համակողմանի զարգացմանը։

Պրակտիկան ցույց է տալիս, որ պրոֆեսիաների համատեղումն ու աշխատողի կողմից արտադրության ողջ պրոցեսի հիմունքներին տիրապետելը, որպես կանոն, հնարավոր է այս կամ այն կոնկրետ մասնագիտության խոր յուրացման ու կատարելագործման միջոցով։ Այդ մասնագիտության էության և առանձնահատկությունների խոր ու բազմակողմանի իմացումը ընդհուպ մոտեցնում է աշխատողին արտադրության ողջ պրոցեսի օրինաչափություններին և տեխնոլոգիայի ըմբռնմանը, հեշտացնում հարակից այլ պրոֆեսիաներում կողմնորոշվելն ու դրանց տիրապետելը։

Դա հաստատվում է հենց աշխատանքի վետերանների, գյուտարարների և ռացիոնալիզատորների հարուստ փորձի ուսումնասիրությամբ ու վերլուծությամբ։ Վերցնենք, օրինակ, Մոսկվայի նորարարների քաղաքային խորհրդի նախագահ, ՌՍՖՍՀ-ի վաստակավոր գյուտարար Նիկոլայ Սեմյոնովիչ Ալեքսանդրովի օրինակը։ Կատարելապես տիրապետելով խառատի պրոֆեսիային, նա խորիմաց կոնսուլտացիաներով, ինչպես և գիտնականների հետ միասին



մշակած իր կոնստրուկցիաներով ու հետազոտություններով գործարար օգնություն է ցույց տալիս բանվորներին ոչ միայն իր հիմնական մասնագիտության գծով։ Նույնը կարելի է ասել նաև նորարարների Մոսկվայի քաղաքային խորհրդի նախագահի տեղակալի՝ նորարար փականագործ Միխայիլ Դենիսովիչ Մորևի մասին։ Հիմնովին ուսումնասիրելով փականագործի պրոֆեսիան և աշխատակցելով ակադեմիկոս Ի. Ի. Արտոբոլևսկու հետ ու նրա ղեկավարությամբ, Միխայիլ Դենիսովիչը կարողացել է նույնիսկ արժեքավոր ուղղումներ մտցնել նրա «Մեքենաներ ու մեխանիզմներ» գրքում՝ արժանանալով հեղինակի ճանաչմանը։ Ե՛վ Ն. Ս. Ալեքսանդրովը, և՛ Մ. Դ. Մորևը չունեն բարձրագույն կրթություն և ոչ էլ գիտնականի հավակնություն։ Բայց իրենց դասախոսություններով և խորհուրդներով մեծ հեղինակություն են վայելում ո՛չ միայն ուսանողների, այլև բուհերի շատ գիտաշխատողների շրջանում։

Մենք վկայակոչեցինք միայն երկու նորարարների, բայց նրանք բացառություններ չեն։ Ներկայումս միայն Մոսկվայում աշխատում են ավելի քան 300 հազար ռացիոնալիզատորներ և գյուտարարներ։ Նորարարների շարժումը ծավալվել է մեր ամբողջ երկրում։ Գործարար սոցիալիստական մրցությունը միայն Հայաստանում ներգրավել է 500-ից ավելի կոլեկտիվներ, մոտ 800 արտադրամասեր, բաժիններ, բրիգադներ, 6000-ից ավելի գյուտարարների և ռացիոնալիզատորների։ Ալավերդու լեռնամետալուրգիական կոմբինատի փականագործ Շ. Աբելյանի, Երևանի «Պոլիվինիլացետատ» գործարանի բրիգադավար Մ. Ալեքյանի, պոլիմերային նյութերի համամիութենական ինստիտուտի ավագ գիտաշխատող Ն. Փափազյանի, «Նաիրիտ» արտադրամիավորման ավագ ինժեներ Լ. Քալանթարյանի և շատ ուրիշ նորարարների ու գյուտարարների անունները հայտնի են ոչ միայն մեր հանրապետությունում։

Կարելի է շատ օրինակներ բերել՝ պարզաբանելու վերը նշված թեզն այն մասին, որ սոցիալիստական արտադրության բազմաթիվ առաջավորներ ինչպես քաղաքներում, արտադրական ու կուլտուրական կենտրոններում, նույնպես և գյուղերում ու ծայրամասերում, մասնագիտանալով մեկ կամ երկու պրոֆեսիաների մեջ, գիտելիքներ և հմտություններ են ձեռք բերում՝ տիրապետելու ուրիշ պրոֆեսիաների, բայց, որպես կանոն, հավատարիմ են մնում իրենց հիմնական պրոֆեսիաներին և շարունակում են զարգացնել ու կատարելագործել դրանք։

Նոր տիպի աշխատողների պատրաստման գործը, իհարկե, չի ավարտվում հատուկ ուսումնական հաստատություններում։ Այն ոչ պակաս հաջողությամբ շարունակվում է նաև նրանց պրակտիկ գործունեության պրոցեսում, աշխատանքային կոլեկտիվներում։ Տեխնիկայի և գիտության աննախընթաց զարգացման արդի պայմաններում անհրաժեշտ է ետ չմնալ կյանքից, մշտապես սովորել, շարունակ և ինքնուրույն կերպով բարձրացնել սեփական պրոֆեսիոնալ և ընդհանուր զարգացման մակարդակը, տիրապետել ժամանակակից գիտության նվաճումներին և առաջավոր պրակտիկային։

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ՀԱՅՐԵՆԱՍԵՐԻ ՔԱՂԱՔԱՑԻԱԿԱՆ ՊԱՐՏՔԸ

**Հ. Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ**
Պաշտոնաթող գեներալ-մայոր

*ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ, ՀԱՏԿԱՊԵՍ ԱՃՈՂ ՍԵՐՆԴԻ ռազմա-հայրենասիրական դաստիարակությունը մեր երկրում տարեցտարի լայն թափ է ստանում, ձեռք բերում նոր բովանդակություն, հարստանում արդյունավետ միջոցներով, ձևերով ու մեթոդներով: Այդ ամենը, անշուշտ, արդյունք է այն հոգածության, որ կոմունիստական կուսակցությունը և նրա Կենտրոնական կոմիտեն ցուցաբերում են մեր ժողովրդի, հատկապես երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակության նկատմամբ:*

*ՍՄԿԿ XXIV և XXV համագումարներում Լ. Ի. Բրեժնևն առանձնակի շեշտեց մեր հայրենիքի պաշտպանական հզորության ամրապնդման, սովետական մարդկանց հայրենասիրության, առավել զգոնության, սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու պատրաստակամության ոգով դաստիարակելու անհրաժեշտությունը: Կուսակցության ու ժողովրդի կարևորագույն խնդիրներից է այդ: Ահա ինչու այժմ ևս հրատապ է Վ. Ի. Լենինի այն ցուցումը, որ «...հաղթության համար արված մեր բոլոր քայլերը մենք պետք է զուգակցենք մեր ամբողջ ռազմական պատրաստականությանը» (Երկեր, հ. 30, էջ 579):*

*Երիտասարդության ռազմա-հայրենասիրական դաստիարակությունը բարոյա-քաղաքական, հոգեբանական ու մարտական վեհ հատկանիշների ձևավորման պրոցես է: Դրա գլխավոր նպատակն է սովետական ամեն մի երիտասարդի տոգորել իր երկրի բախտի հանդեպ անձնական պատասխանատվությամբ, ամեն պահ հայրենիքը պաշտպանելու մշտական պատրաստակամությամբ:*

*Ռազմա-հայրենասիրական դաստիարակության հիմնական բովանդակությունը երիտասարդ սերնդի քաղաքական գիտակցականության և նրա կոմունիստական աշխարհայացքի ձևավորումն է, որը զուգորդվում է բուրժուական գաղափարախոսության մերկացմամբ:*

*Բնավ չենք կարող անտեսել գաղափարական այն անզուլ պայքարը, որ ծավալում է մեր դեմ բուրժուական պրոպագանդան՝ մասնավորապես հասցեագրելով այդ երիտասարդությանը: Քաղաքական դիվերսիաների, գաղափարական խաբեության, երկրորդ համաշխարհային պատերազմի պատմական անցքերի խեղաթյուրման մեթոդներով բուրժուական գաղափարախոսները ջանում են հոգեպես ընկճել սովետական երիտասարդությանը, խարխլել նրա դասակարգային ինքնագիտակցությունը, մարտական հեղափոխական ոգին, հավատը կոմունիզմի, ավագ սերնդի ավանդույթների նկատմամբ:*

*Եվ այսօր, երբ թևակոխել ենք միջազգային լարվածության թուլացման որոշակի շրջափուլ, արևմուտքում շարունակում են լույս տեսնել երկրորդ համաշխարհային պատերազմի պատմությանը նվիրված շատ «աշխատություններ», որոնց հեղինակները, «օբյեկտիվ հետազոտողի» անվան տակ, ճգնում են հաղթանակի հիմնական դարբնողներ ներկայացնել ԱՄՆ-ին և Անգլիային:*

*Պատահական չէ, որ պատմության կեղծարարներն այդքան մեծ ուշադրություն են նվիրում ֆաշիզմի դեմ տարած հաղթանակի որոշիչ դերին: Հայտնի է, որ սոցիալիզմի և կապիտալիզմի գաղափարների պայքարում, որ առանձնապես սրվել է վերջին տարիներին, երկրորդ համաշխարհային պատերազմի պատմությունը դարձել է գաղափարական զոտեմարտի կարևոր ճակատ: ՍՄԿԿ XXV համագումարում Լ. Ի. Բրեժնևը շեշտեց. «Համաշխարհային քաղաքականության մեջ կատարված դրական տեղաշարժերը, լարվածության թուլացումը բարենպաստ հնարավորություն են ստեղծում սոցիալիզմի գաղափարների լայն տարածման համար» (ՍՄԿԿ* Կենտկոմի հաշվետվությունը և կուսակցության հերթական խնդիրները ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում*, էջ 122):*

*Բուրժուական գաղափարախոսները փորձում են նսեմացնել Սովետական Միության, նրա հերոսական զինված ուժերի դերն ու ծառայությունները ֆաշիզմի ջախջախման գործում, ի չիք դարձնել ժողովուրդների երախտագիտության զգացումը սովետական մարդկանց, զինվորների հանդեպ, նրանց հանդեպ, ովքեր աշխարհը փրկեցին «դարշնագույն ժանտախտից», ուռճացնել արևմտյան դաշնակիցների դերը:*

*Երկրորդ համաշխարհային պատերազմի իրադարձությունների խեղաթյուրման մյուս նպատակն է՝ «ապացուցել», որ ֆաշիզմի դեմ տարած մեր հաղթանակը, իբր, պատահական էր և ոչ օրինաչափ:*

*Պատերազմի տարիների փաստերն ու փաստաթղթերը ցույց են տալիս, որ նման պնդումներն անհիմն են: Սովետական գիտնականները, մյուս երկրների մարքսիստ-ուսումնասիրողներն ապացուցել են, որ երկրորդ համաշխարհային պատերազմի գլխավոր անցքերը կատարվել են սովետա-գերմանական ճակատում:*

*Հաղթանակի 30-ամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ ասված է. «Մեր երկիրը դարձավ գերմանական ֆաշիզմի՝ համաշխարհային տիրապետություն տանող ճանապարհի հիմնական արգելակիչ ուժը, իր ուսերին տարավ պատերազմի հիմնական ծանրությունը, վճռական դեր խաղաց հիտլերյան Գերմանիայի ջախջախման գործում»:*

*Ահա ինչու մեր պրոպագանդիստներն ու դասախոսները պարտավոր են համառ ու անզուլ ակտիվությամբ բացահայտել իմպերիալիստական պրոպագանդայի թշնամական նկրտումները, վճռական հակահարված տալ դրան, երիտասարդությանը մեկնաբանելով, ներկայացնելով ողջ ճշմարտությունը սոցիալիստական հասարակարգի, սովետական ապրելակերպի առավելությունների, սովետական մարդկանց հերոսության, Սովետական Միության կոմունիստական կուսակցության ղեկավար դերի մասին:*

*Ռազմա-հայրենասիրական դաստիարակությունը ենթադրում է աճող սերնդի բարոյա-քաղաքական այնպիսի հատկությունների ձևավորում ու զարգացում, ինչպիսիք են՝ սովետական հայրենասիրությունն ու պրոլետարական ինտերնացիոնալիզմը, քաղաքական բարձր զգոնությունը, ատելությունը սոցիալիզմի թշնամիների՝ իմպերիալիստական ագրեսորների նկատմամբ:*

*Այս առումով երիտասարդներին անհրաժեշտ է պարզաբանել սոցիալիստական հայրենասիրության լենինյան սկզբունքները, կուսակցության ծրագրի, ՍՍՀՄ սահմանադրության պահանջներն այն մասին, որ հայրենիքի պաշտպանությունը սովետական քաղաքացու պատվի գործն է:*

*Բուրժուական գաղափարախոսները, չկարողանալով կամ չկամենալով խորամուխ լինել սոցիալիստական հայրենասիրության էության մեջ, համառորեն պրոպագանդում են մի առասպել, իբր, սովետական ժողովուրդը Հայրենական մեծ պատերազմում պաշտպանում էր ոչ թե սովետական կարգերը, այլ պարզապես իր հայրենիքը՝ անկախ նրա սոցիալական բնույթից:*

Պարզ է, որ նման դատողություններն աղավաղում են սովետական հայրենասիրության էությունը, այդ պատճառով իսկ չեն կարող բացահայտել դրա սկզբնաղբյուրը, մեր մարդկանց՝ անցած պատերազմում դրսևորած բարոյական բարձր ոգին։ Հանուն սովետների իշխանության և հայրենիքի սոցիալիստական վերափոխումների ծավալված պայքարում սովետական մարդիկ ստեղծել են իրենց ավանդույթները, որոնց հիմքը նրանց անսահման նվիրվածությունն է սոցիալիստական հայրենիքին։ Հարկ է նաև հաշվի առնել, որ ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների և սովետական պետության շահերն անբաժանելի են։ Եվ հենց դրանով է բացատրվում սովետական մարդկանց աննախադեպ մասսայական հերոսությունը, որ պատերազմի դաժան տարիներին դրսևորվեց ինչպես մարտի դաշտերում, նույնպես և թիկունքում։

Մեծ հայրենականը մեր սոցիալիստական պետության բոլոր ազգերի ու ազգությունների անխախտ բարեկամության և սովետական ողջ ժողովրդի սերտ համերաշխության քննություն էր։ Ուխտադրժորեն հարձակվելով Սովետական Միության վրա, հիտլերյան ստրատեգները հույս ունեին, որ պատերազմի առաջին իսկ օրերից գժտություններ կառաջանան ՍՍՀՄ ժողովուրդների միջև, կպառակտվեն նրանք, և կփլուզվի սովետական բազմազգ պետությունը։ Մեր երկրի ժողովուրդները հօդս ցնդեցրին թշնամու հաշիվները՝ ցուցադրելով իրենց ջերմ հայրենասիրությունը, ինչպես և բոլոր ժողովուրդների իսկական համերաշխությունն ու եղբայրությունը և՛ ճակատում, և՛ թիկունքում։

Սովետական հայրենասիրությունը և պրոլետարական ինտերնացիոնալիզմն առավել ցայտուն դրսևորվեցին մեր մարդկանց մասսայական հերոսություններում. «Եթե խոսենք Հայրենական մեծ պատերազմի գլխավոր հերոսի մասին, ապա այդ անմահ հերոսը մեր երկրում ապրող, եղբայրության անքակտելի կապերով զոդված ժողովուրդների ողջ համերաշխ ընտանիքն է»,— նշել է ընկեր Բրեժնևը։

Այսպիսով, երիտասարդությանը հայրենասիրության և ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում մեծ նշանակություն ունի սոցիալիզմի, մեր դեմոկրատիայի, ՍՍՀՄ և սոցիալիստական համագործակցության երկրների ժողովուրդների մեծ եղբայրության վիթխարի առավելությունների պարզաբանումը։ ՍՄԿԿ XXV համագումարի փաստաթղթերն անգնահատելի փաստական նյութ են տալիս այս բոլոր հարցերի վերաբերյալ։ Կարևոր է ավելացնել, որ հայրենասիրության, ինտերնացիոնալիզմի գաղափարները միահյուսվել են բանվորի, կոլտնտեսականի, մտավորականի կերպարում, մարմնավորվել հայրենասիրական կոնկրետ գործերում և նպաստել ժողովրդատնտեսական պլանների, սոցիալիստական պարտավորությունների կատարմանն ու մեր երկրի տնտեսական պոտենցիալի ամրապնդմանը։

Հեղափոխական, մարտական և աշխատանքային հերոսական ավանդույթների պրոպագանդումը պետք է օրգանապես շաղկապվի երիտասարդությանը քաղաքացիական վեհ հատկանիշներով, աշխատանքի և ուսման նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով համակելու հետ։ Այս պրոպագանդայում նշանակալի տեղ է հատկացվում սովետական ժողովրդի և նրա զինված ուժերի հերոսությանը, Հայրենական մեծ պատերազմում և թիկունքում սովետական մարդկանց աշխատանքային մեծագործություններին։

Ավանդույթներում ամփոփված է օրինակի այն մեծ ուժը, որ մղում է երիտասարդներին՝ շարունակելու ավագ սերնդի փառահեղ գործերը, հետևելով հայրերին ու պապերին՝ անձնվիրաբար պայքարելու հանուն ժողովրդի պատվի, ազատության ու անկախության։ Հեղափոխական պայքարի օրինակները, շեշտել է Վ. Ի. Լենինը. «...փառոս պետք է ծառայեն մեզ մարտիկների նոր սերունդներ դաստիարակելու գործում» (Երկեր, հ. 15, էջ 61)։

Երիտասարդությանը սովետական զինված ուժերի հանդեպ սիրո և հարգանքի զգացումով են համակում կազմակերպվող «Արծվիկ», «Փայլակ» ռազմա-մարզական խաղերը, մասնակցությունը մարզումներին, պարապմունքներին, «ԴՕՍԱԱՖ»-ի պաշտպանական-մասսայական աշխատանքներին, պիոներական հավաքներին։



Մեր երիտասարդությունը պետք է իմանա, թե մարտական ինչպիսի ուղի են անցել սովետական զինված ուժերը, իրազեկ լինի քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմների տարիներին ռեակցիոն ուժերի ջախջախման գործում նրա պատմական ծառայություններին, բանակի և նավատորմի արդի իրավիճակին, լավ պատկերացնի այն դժվարություններն ու զրկանքները, որ բաժին են ընկել հայրենիքի պաշտպանների ավագ սերնդին։

Այս առանձնապես անհրաժեշտ է, քանի որ մեր այժմյան երիտասարդները ծնվել են մեծ Հայրենականից հետո։ Նրանք չեն մասնակցել իմպերիալիզմի դեմ մղված մարտերին։ Բանակի ու նավատորմի հերոսական ուղու, նրանց մարտական ծառայությունների մասին նրանք կարող են իմանալ միայն գրքերից, կինոնկարներից և ավագների պատմածներից։

Ուստի, հարկավոր է խելամիտ օգտվել այդ սկզբնաղբյուրներից, որպեսզի երիտասարդությունը պարզորոշ պատկերացնի մեր հայրենիքի ու ժողովրդի հերոսական անցյալը, կոմունիստական կուսակցության՝ որպես ղեկավարող և ուղղություն տվող ուժի, հեղափոխական ավանդույթները։ Այս ամենը պահանջում է ավելի մեծ ուշադրություն, բանավոր ու գրավոր պրոպագանդայի որակի բարելավում, գիտական մակարդակի բարձրացում։

Հիրավի, սովետական զինված ուժերում մասսայական էին ինչպես առանձին մարտիկների, նույնպես և ստորաբաժանումների, զորամասերի ու միավորումների հերոսագործությունները. դրանց հիմքը անհատական շահերի գիտակցական զոհաբերումն էր հայրենիքի, ժողովրդի շահերին։ Մեծ Հայրենականում մոտ 300 անգամ կրկնվեց Վյաչեսլավ Վասիլկովսկու, Ալեքսանդր Մատրոսովի և Հունան Ավետիսյանի անմահ սխրանքը, նույնքան անգամ՝ կապիտան Ն. Գաստելլոյի և ավագ քաղղեկ Ս. Հայրապետովի, ավելի քան 400 անգամ Յու. Սմիրնովի, Ա. Պանկրատովի, Վ. Տալալիխինի և այլոց սխրանքները։

Հանուն արդար գործի ծավալված մասսայական հերոսությունը պատմականորեն օրինաչափ երևույթ է, քանի որ զանգվածներն իրենք են կերտում պատմությունը և հաստատում նոր հասարակարգ։ Հերոսականության մասսայական բնույթն արդյունք է այն բանի, որ սովետական հասարակության բոլոր խավերը, նրա բոլոր ազգերն ու ազգությունները չտեսնված զոհողությունների դիմեցին հանուն սոցիալիստական հայրենիքի ազատության ու բարգավաճման։

Մեր մարտիկների հերոսականությունը զերծ է ինքնացուցադրման, ինքնափառաբանման դրսևորումներից։ Սխրանքների վերլուծությունը ցույց է տալիս, որ կոնկրետ իրավիճակներում նրանք ղեկավարվել են այն գիտակցությամբ, որ իրենց արարքը որոշակի հաջողություններ կբերի մարտիկներին, զինակիցներին, կնպաստի մարտական առաջադրանքի կատարմանը։ Ճիշտ են ասում զինվորները. «Հերոսը նա չէ, որ անխոհեմորեն նետվում է դեպի հակառակորդի կրակը, այլ նա, ով գիտակցաբար կատարում է իր պարտականությունը»։

Լեգենդար հետախույզ Ն. Ի. Կուզնեցովը թշնամու թիկունք մարտական առաջադրանքի մեկնելուց առաջ, գրել է. «Ես սիրում եմ կյանքը, ես դեռ շատ երիտասարդ եմ։ Բայց քանի որ հայրենիքս, որին սիրում եմ մորս պես, պահանջում է ինձնից կյանքս զոհաբերել գերմանական ֆաշիստներից նրա ազատագրման գործին, ես կանեմ այդ։ Թո՛ղ ողջ աշխարհն իմանա՝ ինչի է ունակ ռուս հայրենասերն ու բոլշևիկը» (**Говорят погибшие герои.** Политиздат, 1966, стр. 343)։

Զինվորական սխրանքը, մահվան հանդեպ արհամարհանքը վտանգի պահին՝ միշտ չէ, որ վերջանում է կործանմամբ։ Հաճախ այս հատկանիշները, անսասան հավատը արդար գործի հաղթանակի նկատմամբ օգնում են խուսափելու վտանգից, հաղթելու մարտում՝ պահպանելով կյանքը։

Ֆաշիզմի դեմ պայքարող անվեհեր մարտիկ Գեորգի Դիմիտրովն ասել է. «Կյանքիս ամենածանր ժամանակներում, ամենադժվարին պահերին,— իսկ ես շատ եմ հայտնվել մահվան դեմհանդիման,—ողջ մնալուս համար ես պար-

լայնի ՍՍՀՄ-ի պաշտպանական հզորության նյութական բազան, կամրապնդի ռազմա-տնտեսական պոտենցիալը։

*Միշտ պետք է հիշել, որ սովետական ժողովրդի ստեղծագործ աշխատանքը, մեր փառապանծ սոցիալիստական նվաճումները հարկ է պաշտպանել ամեն տեսակ պատահականություններից։ Այդ է ուսուցանել մեզ մեծ Լենինը, այդ են սովորեցնում պատմության դասերը. այդ է բխում արդի միջազգային պայմանների առանձնահատկություններից։*

*Վ. Ի. Լենինը* «Ձախ» երեխայության և մանր բուրժուականության մասին *աշխատությունում նշել է. «...մենք բոլորից էլ պահանջում ենք լրջորեն վերաբերվել երկրի պաշտպանությանը։ Լրջորեն վերաբերվել երկրի պաշտպանությանը, այդ նշանակում է հիմնավորապես պատրաստվել և խիստ հաշվառման ենթարկել ուժերի հարաբերակցությունը» (Երկեր, հ. 27, էջ 404)։*

*ՍՄԿԿ XXV համագումարում, Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկեր Բրեժնևն ասաց. «Ոչ ոք չպետք է տարակուսի նաև այն բանում, որ մեր կուսակցությունն ամեն ինչ կանի, որպեսզի Սովետական Միության փառապանծ զինված ուժերի տրամադրության տակ այսուհետ ևս բոլոր անհրաժեշտ միջոցները լինեն իրենց պատասխանատու խնդիրը կատարելու համար, որպեսզի նրանք լինեն սովետական ժողովրդի խաղաղ աշխատանքի պահապանը, ընդհանուր խաղաղության պատվարը»* (ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետվությունը..., *էջ 137)։*

*Սովետական բանակը զինվածությամբ, բարոյա-քաղաքական կոփվածությամբ անխոցելի է. նրա ողջ կազմը կոմունիստների ու կոմերիտականների միախառն ձուլվածք է, որը միշտ պատրաստ է կործանիչ հարված տալ ցանկացած ագրեսորին։ Ժամանակակից բանակայինը, սպան օժտված են գիտատեխնիկական ու գաղափարա-տեսական խոր գիտելիքներով։ Մեր բանակը զարգացնում ու հարստացնում է նախորդ սերունդների հեղափոխական ու մարտական ավանդույթները, կատարելագործում ռազմագիտական արվեստը։ Սովետական բանակը մեր բազմազգ ժողովրդի արժանի ներկայացուցիչների համատեղություն է, սովետական հայրենասիրության ու սոցիալիստական ինտերնացիոնալիզմի մարմնացումը։ Մեծ պատիվ է ծառայել սովետական բանակում, դառնալ կադրային զինվորական։ Մենք հպարտ ենք, որ մեր զինված ուժերի պատմության բոլոր փուլերում սովետական մյուս ժողովուրդների ներկայացուցիչների հետ մարտական փառքի փայլուն ուղի են անցել նաև հայ ժողովրդի զավակները, որոնցից շատերը դարձան բարձրաստիճան սպաներ, գեներալներ, ճանաչված զորավարներ։ Մեծ Հայրենականի ահեղ մարտերում մեր ժողովրդի արժանի զավակները ցուցաբերեցին հերոսության չխամրող օրինակներ։*

*Ես, որպես երկարամյա զինվորական և Հայրենական պատերազմի վետերան, մեծ ակնկալություններ ունեմ մեր երիտասարդ սերնդից։ Համոզված եմ, որ հայրենիքի պաշտպանության պատասխանատու մարզում ևս մեր երիտասարդները ջանք չեն խնայի առավելապես տիրապետելու արդի ռազմական արվեստին, հասնելու հրամանատարական բարձունքների։*

---

## ՄԱՄՈՒԼԻ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

### ՀՆԳԱՄՅԱԿԻ ՆՇԱՆԱԲԱՆԸ ՈՒՇԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆՈՒՄ

# ՋԵՐՄՈՒԿ

«Ջերմուկ» թերթի խմբագրությունն զգալի գործ է կատարել շրջանի տնտեսական ու կուլտուրական կյանքի համակողմանի արտացոլման ասպարեզում: Համարյա բոլոր համարներում տեղ են գտել արտադրանքի որակի բարձրացման հարցերը, արտահայտվել է շրջանի աշխատավորության մտահոգությունը տասներորդ հնգամյակի այս կարևորագույն առաջադրանքի կատարման համար: Նրանց օգնելու նպատակով խմբագրությունը հրապարակել է կոնսուլտացիոն նյութեր, մասնագետների խորհուրդներ, մասսայականացրել առաջավոր տընտեսությունների փորձը: Այսպես, Ազիզբեկովի գլխավոր պանրագործարանի միկրոբիոլոգ Օ. Առուստամյանը հանդես է եկել կաթի միկրոֆլորայի աղբյուրները բացահայտող շատ օգտակար հոդվածով, որի նպատակն է օգնել անասնապահներին՝ ապահովելու կաթի բարձր որակը, պատշաճ ձևով կազմակերպելու կովերի խնամքը:

Որակի և արդյունավետության հնգամյակում հոդվածում (№ 35) շինանյութերի և իրերի կոմբինատի կուսկազմակերպության քարտուղար Ա. Հովհաննիսյանը գրում է, որ տարեցտարի ավելանում է իններորդ հնգամյակում հիմնադրված այս կոմբինատի համախառն արտադրանքը, բարձրանում որակը: Նոր հնգամյակում տեխնիկապես առավել հագեցվելու են կոմբինատի արտադրամասերը, մեքենայացվելու են շատ արտադրապրոցեսներ, կառուցվելու են նոր արտադրամասեր՝ ժամանակակից քարհատ սարքավորումներով: Կոմբինատի կոմունիստները ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները կենսագործողների առաջին շարքերում են:

Թերթի հատուկ թղթակից Ռ. Մարկոսյանն իր Ինտենսիվացումը գլխավոր գրավականն է հոդվածում (№ 58) որպես տասներորդ հնգամյակի կարևորագույն խնդրի լուծման հիմնական ուղի նշում է խնայողությունը, տնտեսումը, բոլոր հնարավորությունների ու ռեզերվների օգտագործումը, գիտության ու տեխնիկայի առաջավոր փորձի արմատավորումը, արտադրության ինտենսիվացումը:

Շրջանային թերթը մեծ տեղ է հատկացնում աշխատավորության ավանգարդի, գյուղատնտեսության, արդյունաբերության տարբեր բնագավառների առաջամարտիկների՝ կոմունիստների, կուսկազմակերպությունների գործունեության արտացոլմանը: Չէ՛ որ նրանց բանիմաց, գործարար ու հմուտ ղեկավարությունը հաջողության գրավականն է ժողովրդական տնտեսության բոլոր ասպարեզներում: Այդ հարցին նվիրված նյութերով հանդես են գալիս շրջանի կուսակցական ղեկավար գործիչներ, կուսկազմակերպության քարտուղարներ, ինչպես և թերթի աշխատողներ:

Զրույցներ տասներորդ հնգամյակի թեմաներով խորագրի տակ հրապարակված է Ստեղծագործական աշխատանքի բերկրանքը (№ 108) հոդվածը: Աշխատավոր մարդու ջանքերով կենսագործվում են մեր կուսակցության XXV համագումարի որոշումները: Ինչպես նշեց ընկեր Բրեժնևը, ժամանակակից արտադրությունը պահանջում է, որ յուրաքանչյուր աշխատող պարզորոշ պատկերացնի իր տեղը աշխատանքային պրոցեսում, իմանա որտե՞ղ, ի՞նչ և ինչո՞ւ է անում, ի՞նչ է պահանջվում իրենից, զգա, որ իր աշխատանքն ընդհանուր գործի անհրաժեշտ մասն է: Այդ զգացումը հենց դառնում է ստեղծագործական աշխատանքի աղբյուր, սովետական մարդուն համակում իր երկրի տիրոջ զգացումով:

Ահա իրեն երկրի տեր զգացող մարդը ձըգտում է որքան հնարավոր է շատ բան անել հայրենի երկրի վերելքն ու ծաղկումն ապահովելու համար, շատ և որակով: Ու ծավալվում է սոցիալիստական մրցությունը— անհատական, կոլեկտիվ, միջշրջանային, միջհանրապետական: Շրջանում ծավալված մրցությունն արտացոլվել է «Ջերմուկ» լրագրի էջերում: Այդ առումով հետաքրքրական են թերթի 36 և 93 համարները, որոնց 2-րդ և 3-րդ էջերը կրում են Բարեկամության, մրցության դրոշով խորագիրը: Առաջինը «Ջերմուկ» և «Կաբուչի» թերթերի համատեղ համարն է, որն արտացոլում է ՀՍՍՀ Ազիզբեկովի և Ադրբեջանական ՍՍՀ Շահբուզի շրջանների սոցիալիստական մրցությունը, ներկայացնում դրա առաջավորներին:

Ազիզբեկով—Բախչիսարայ—Շահբուզ շրջանների մրցությունն է ներկայացված թերթի 93-րդ համարում:

«...հաջողությունն է ուղեկցել նախ և առաջ այն կազմակերպություններին,— Հայաստանի կոմունիստական կուսակցության XXVI համագումարում ասաց ընկեր Դեմիրճյանը,— ուր մրցության դաստիարակչական պոտենցիալի աճն առնչվել է նրա ողջ մակարդակի ու թափի բարձրացման հետ, այդ համաժողովրդական շարժման ղեկավարման նկատմամբ գիտական մոտեցման հետ, արդյունքների հրապարակայնության, համադրելիության, փորձի կրկնման հնարավորության լենինյան սկզբունքների կիրառման հետ»:

Ճիշտ է, թերթի խմբագրությունը որոշ գործ է կատարել մրցության հրապարակայնության, առաջավոր փորձի, կոլեկտիվների, անհատների աշխատանքային լավագույն օրինակի մասսայականացման ասպարեզում, բայց այն դեռևս շատ անելիքներ ունի արդյունավետությունը՝ արտադրանքի որակի բարձրացման այս կարևոր խթանը, պրոպագանդելու ինչպես հարկն է՝ հաղթահարելով պարզունակությունն ու մակերեսայնությունը:

Որակի բարելավման, արդյունավետության բարձրացման նպատակով քննադատության և ինքնաքննադատության ծավալումը ևս մամուլի օրգանների առաջնահերթ խնդիրներից է: Պետք է ասել, որ «Ջերմուկ»-ի էջերում քննադատության կրակը շատ հաճախ ուղղվել է նկատվող թերությունների, ինչպես և թերացողների վրա:

Ազիզբեկովի շրջանի գյուղական մթերումների և որակի պետական տեսուչ Լ. Ռաֆայելյանը Ինչպիսի՞ն պետք է լինի կաթի որակը (№ 17) հոդվածում կոնկրետ քննադատում է որոշ տնտեսությունների ղեկավարներին անորակ կաթ հանձնելու համար: Թերթն ունի Կաթի որակը հսկողության տակ խորագիրը, ուր պարբերաբար անդրադառնում են այդ հարցին, վերհանում որակի իջեցման պատճառները:

Առևտրական խաչմերուկներում (№ 14). այսպես է կոչվում սանէպիդկայանի գլխավոր բժիշկ Ս. Հովհաննիսյանի, սանէպիդկայանի աշխատակից Մ. Հարությունյանի, թերթի հատուկ թղթակից Ֆ. Ղազարյանի և Ս. Բունիաթյանի քննադատական հոդվածը, ուր ամփոփված են նրանց ստուգայցի արդյունքները: Այն լավ է գրված, քննադատությունը տեղին է: Ստուգող խումբը նախաճաշարանում է, այստեղ ևս թերակշռումներ, գների խախտում: Մտնում են խոհանոց, ծեփաթափ պատեր, ճաշի ծռմռված, անմաքուր կաթսաներ, հատակին բռրբոսնած բանջարեղեն, ժանգոտ մսաղաց... Առևտուրը կատարվում է այնպես, ինչպես հարմար է բուֆետապանին և խոհարարին:

Գյուղի երիտասարդության կուլտուրական հանգստի խելացի կազմակերպման, սոցիալիստական մրցության խթանման, դրա արդյունքների ամփոփման լավագույն վայրը գյուղական ակումբներն են: Թերթի հատուկ թղթակից Ս. Հարությունյանը գրում է Ջեյթայի ակումբի մասին (№105): Խղճուկ, լքված միահարկ շինություն՝ երկու փոքրիկ սենյակներով, լուսամուտների ջարդված ապակիներով, քանդվող տանիքով: 10—15 տարվա հնություն ունեցող աթոռները փոշեպատ են, ջարդոտված: Իրոք որ Անունը կա, ամանումը չկա:

Եվ այս ամենը որակի՜ հնգամյակում:

Նույնն է վիճակը և Սևան—Արփա հերոսական կառույցի Կարմրաշեն տեղամասի ակումբում, որի մասին գրում է թերթի ակտիվ թղթակիցներից Վեներա Այվազյանը (№ 105):

Մամուլի քննադատական հոդվածներին արձագանքելը, ուշադիր, լուրջ վերաբերմունքը դրանց նկատմամբ, կուսկազմակերպությունների բարյացակամ, ստեղծարար աշխատանքի ապահովումը՝ ամենուր որակի բարձրացման միջոցներից են: Այդ, միաժամանակ, մամուլի օրգանի կենսունակության ցայտուն արտահայտությունն է, կյանքին կապող կենարար զարկերակը, և տեղական կազմակերպությունները պետք է հոգան, որ չցամաքի այդ զարկերակը: Սակայն, այնքան են անարձագանք, անպատասխան մնում թերթի քննադատական հոդվածները, որ խմբագրությունն ամիսներ անց, ստիպված հրապարակում է Հիշեցում նրանց, ովքեր չեն պատասխանում թերթի քննադատական նյութերին ծանուցումը:

Շրջանային լրագիրը ողջ շրջանի նկարագիրն է, նրա գործերի, հոգսերի, անելիքների արտահայտիչը: Որքան ճշմարիտ ու լավ արտացոլվեն այդ ամենը նրա էջերում, այնքան ճիշտ կլինի պատկերացումը տվյալ շրջանի մասին, այնքան շատ կլինեն ընթերցողները, թերթի բարեկամները, այնքան շատ կշահի ինքը՝ թերթը:

## Արշալույս

Կուսակցության XXV համագումարի որոշումների համակողմանի լուսաբանման և պրոպագանդման որոշակի փորձ է կուտակել «Արշալույս» լրագիրը: Ընթացիկ տարվա մարտյան համարներից սկսած՝ նրա էջերը հարստացել են նոր խորագրերով՝ Տասներորդ հնգամյակին՝ հարվածային աշխատանք, Կենսագործենք ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, Տասներորդ հնգամյակի առաջին տարվա երթը, Հոբելյանական տարվա վստահ քայլերը և այլն, որոնք ինքնին հուշում են, թե ո՛րն է այդ բաժիններում տպագրվող նյութերի միտումը: Դրանք թեմատիկ համարներ են, նպատակային էջեր, բազմաժանր հրապարակումներ, լուսանկար-մակագրություններ, որոնք համագումարի որոշումների, կուսակցության տնտեսական քաղաքականության կենսագործման յուրատեսակ վավերագրեր են: Որակի և արդյունավետության հարցերը մշտապես խմբագրության ուշադրության կենտրոնում են:

Արտադրանքի բարձր որակի համար առաջնորդողում (№ 32) կոլեկտիվների ուշադրությունն է հրավիրվում արտադրանքի որակի բարելավմանն առնչվող մի շարք գործոնների վրա: Դրվատվում են Աբովյանի շրջանի առաջավոր ձեռնարկությունները՝ «Հայբյուրեղապակի», երկաթբետոնե կառուցվածքների գործարանները, կահույքի պատրաստման և նորոգման «Կոտայք» արտադրամիավորումը և այլն, որոնք կոնկրետ միջոցներ են ձեռնարկում առաջավոր փորձի արմատավորման, աշխատողների պրոֆեսիոնալ վարպետության բարձրացման, տեխնիկայի, աշխատաժամանակի, հումքի, օժանդակ նյութերի արդյունավետ օգտագործման, արտադրանքի որակի բարելավման և տեսականու ընդլայնման մարզերում:

Անդրադառնալով լավագույններին՝ «Արշալույս»-ը աչքաթող չի անում և թերացողներին. ընդ որում թերթի քննադատությունը կոնկրետ է, որոշակի: Նշվում է, որ այդ ձեռնարկությունների թողարկած արտադրանքի մեծ մասը չի համապատասխանում պետական ստանդարտին, հոգ չի տարվում հիմնական արտադրանքը որականիշի հասցնելու համար: Անդրադառնալով «Արզնի» հանքային ջրի ցածրորակությանը՝ լրագիրը նշում է այն ուղիները, որոնցով հնարավոր է վերականգնել, բարձրացնել գործարանի հեղինակությունը: Շեշտը, անշուշտ, դրվում է արտադրության արդյունավետ կազմակերպման վրա: Այս առումով գործերը բարվոք չեն նաև Նուռնուսի քարերի մշակման գործարանում: Ձեռնարկության արտադրանքը չունի որականիշ, խախտվում են սալիկների ստացման նորմաները, չի օգտագործվում այդ նպատակով տեղադրված հոսքային գիծը: Արտադրական առանձին գործողություններ դեռևս չեն մեքենայացվել: Այս ամենից հետո դժվար է, եթե ոչ անհնար, խոսել արտադրանքի բարձր որակի մասին: Վիճակը մխիթարական չէ նաև «Դինամո» մարզական ընկերության տրիկոտաժի ֆաբրիկայում, Աբովյանի հացի գործարանում: Լրագիրը կոչ է անում հիշյալ ձեռնարկությունների տնտեսվարներին և կուսկազմակերպություններին՝ պատշաճ ուշադրություն հատկացնել որակի և արդյունավետության հարցերին:

«Արշալույս»-ը հետագա մի շարք համարներում հետևողականորեն վերստին անդրադարձել է թերացող կազմակերպություններին, պրոպագանդել առաջավորների փորձը: Դրականը հաստատելու միտումով մի շարք հրապարակումներում բացահայտված են որակի և արդյունավետության բնագավառում «Հայբյուրեղապակի» գործարանի նվաճումները, վեր հանված դրանց հասնելու ուղիներն ու մեթոդները (№№ 41, 74, 94 և այլն): Թղթակցությունները պատմում են բյուրեղապակեգործների լավագույն հասումների, նրանց արդյունավետ աշխատանքի մասին: Գործարկել նոր կարողություններ հոդվածից (որ տպագրվել է Արտադրության հրամանատարի ամբիոն մըշտական վերտառությամբ) ընթերցողը տեղեկանում է, որ վերջերս գործարանի թողարկած տասը նոր արտադրատեսակների շնորհվել է պետական որականիշ: Այդ բանին նպաստել են արտադրական մակերեսների ռացիոնալ օգտագործումը, նոր արտադրակարողությունների ներդրումը, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորումը: Պատահական չէ, որ կոլեկտիվն արժանացել է ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ դրոշին:

Սակայն լրագրին առավելապես մտահոգում են շրջանի արտադրական տարբեր օղակներում տակավին հանդիպող թերություններն ու բացթողումները: Նույն սրտացավ հետևողականությունը թերթի թղթակցին տանում է «Արզնի»

հանքային ջրերի գործարան: Ի՞նչ տեղաշարժ է կատարվել ձեռնարկությունում «Արշալույս»-ի քննադատությունից հետո, որտեղ խախտվել են ջրերի մշակման, շշերի լցման տեխնոլոգիական պրոցեսները, գործարանի արտադրանքին հաճախ է ուղեկցում ցածրորակ ածականը: Որակը ուշադրության կենտրոնում (№ 72). հոդվածագիրը նշում է, որ քննադատությունից հետո բարեփոխումներն ակնբախ են դարձել. այդտեղ մեծ է նորարարների ու գյուտարարների ավանդը: Ձեռնարկության լաբորատորիան սահմանել է անհրաժեշտ հսկողություն թողարկվող ջրի նկատմամբ: Ընդօրինակելով լվովցիների փորձը՝ գործարանի մարդիկ ձգտում են արմատավորել արտադրանքի որակի հսկողության կոմպլեքսային մեթոդը. ստեղծվել է որակի վերահսկման կենտրոնական հատուկ հանձնաժողով:

Ի դեպ, ՀԿԿ Աբովյանի շրջկոմի բյուրոն քննարկել է «Արդյունաբերական ձեռնարկությունների արտադրանքի որակի բարելավման վերաբերյալ շրջկոմի բյուրոյի 1975 թվականի նոյեմբերի 19-ի որոշման կատարման մասին» հարցը՝ կապված ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային սիստեմ մշակելու և արմատավորելու ուղղությամբ Լվովի մարզի արդյունաբերական առաջավոր ձեռնարկությունների և կոլեկտիվների աշխատանքի փորձի մասին» որոշման հետ (Լվովցիների օրինակով, № 90): Նշվել է, որ անհետևանք է մնացել Նուռնուսի քարերի մշակման, հացի գործարանների, շինարարական իրերի և շինանյութերի կոմբինատի կուսկազմակերպությունների հասցեին արված քննադատությունը:

Լրագիրը ժամանակին իր քննադատական խոսքն է ասել այս չորս կազմակերպությունների աշխատանքի արատավոր ոճի, առկա թերությունների մասին:

Տեխնիկական վերազինման ճանապարհով հոդվածում (№ 58) Մ. Մարգարյանը, հանգամանալի ներկայացնելով տրիկոտաժի ֆաբրիկայի հասույթները, իրավամբ նշում է. «Միայն տնայնագործական հնացած ձևերից հրաժարվելու, արտադրամասերում արտադրական գործողությունների համակենտրոնացման ու մեքենայացման, հումքի և մյուս ռեսուրսների ռացիոնալ օգտագործման շնորհիվ կարելի է հասնել արտադրության արդյունավետության բարձրացման ժամանակակից պահանջների մակարդակին»: Նույն միտքն է հաստատում հացի գործարանի դիրեկտոր Ա. Նալբանդյանի թղթակցությունը (№ 51): Ավելի մանրակրկիտ է վերլուծված իրավիճակը շինարարական իրերի կոմբինատում, որի արտադրանքի որակին լրագիրն անդրադարձել է երկու անգամ (№№ 64, 116): Ինչո՞ւ է ցածր արտադրվող շինանյութերի և շինարարական առարկաների որակը,— հարցնում է «Արշալույս»-ը և փորձում վերհանել պատճառները: Որակի արգելակիչները կոմբինատում տարբեր են: Շեշտվում է բետոնային հանգույցները ժամանակակից սարքավորումներով համալրելու կարևորությունը: Մի շարք հանգույցներում գործում են իրենց դարն ապրած բետոնախառնիչներ, որոնց հաճախադեպ խափանումները պարապուրդներ են հարուցում: Երկաթբետոնե կառուցվածքների որակի բարելավման նպատակով հարկ է օգտագործել մետաղյա և ոչ փայտյա կաղապարներ, ինչպես արվում է այժմ կոմբինատում: Վիճակն ավելի վատ է ատաղձագործական իրերի արտադրամասում. ցածրորակ փայտանյութ, աշխատանքային ոչ նորմալ պայմաններ... Այստեղից հետևություն՝ չպետք է տարվել սոսկ քանակական ցուցանիշներով, իսկ դրա համար հարկավոր է հիմնովին վերակառուցել ձեռնարկությունը: Ե՛վ քանակ, և՛ որակ— հենց այդպես էլ վերնագրել է իր թղթակցությունը Նուռնուսի քարերի մշակման գործարանի կառավարող Ա. Արզումանյանը (№ 88):

Հիմնականում որակի և արդյունավետության հարցերն են շոշափվում նաև շրջանի գյուղատնտեսական արտադրությանը նվիրված հոդվածներում: Այդ հրապարակումները (Խոստումնալից սկիզբը, № 41, Արդյունքները չեն գոհացնում, № 48, Մարտունակության բարձրացման համար, № 64, Աշնանացանը կատարենք ժամանակին, որակով, № 107 և այլն), մասամբ կամ ամբողջովին, նվիրված են որակի և արդյունավետության խնդիրներին: Դրանցում, սակայն, պատշաճ խորությամբ չեն վերլուծվում փաստերը, համակողմանի չեն վերհանվում գյուղատնտեսական արտադրանքի որակական ցուցանիշների անլիարժեքության պատճառները: Այս նյութերում որակի հարցերը մնում են որպես թռուցիկ հավելում:

«Արշալույս» թերթի խմբագրության և հանրապետության գյուղատնտեսության էկոնոմիկայի ու կազմակերպման գիտահետազոտական ինստիտուտի նախաձեռնությամբ ստեղծված է կադրերի տնտեսագիտական ուսուցման հեռակա դպրոց. պարապմունքները նվիրվում են կուսակցության տնտեսական քաղաքականության արդի հրատապ խնդիրներին, չեն անտեսվում նաև որակն ու արդյունավետությունը: Հույժ ուսանելի այս միջոցառումը ավելի շահեկան կլիներ, եթե իր մի շարք հրապարակումներում (Հողատեսքերի արդյունավետ օգտագործման ուղիները, № 40 և այլն) լրագիրը կարողանար տեղայնացնել նյութը, գործարար



խոսակցություն ծավալել սեփական հոգսերի և նվաճումների շուրջ:

Ուրախալի է, որ թերթի էջերում որակի և արդյունավետության հարցերն արծարծում են հիմնականում մասնագետները, սակայն ավելի լավ կլիներ, եթե լրագիրը խուսափեր երբեմն դրսևորվող մանրաթեմայնությունից, էական պրոբլեմների նկատմամբ հանդես բերեր կոմպլեքսային մոտեցում: Այդուհանդերձ, այս կարևոր ասպարեզում «Արշալույս»-ը բարեխղճորեն է կատարում կոլեկտիվ ագիտատորի, պրոպագանդիստի և կազմակերպչի իր գլխավոր ֆունկցիան:

## ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները խանդավառությամբ ընդունեցին մեր երկրի բոլոր աշխատավորները: Ինչպես նշեց ընկեր Բրեժնևը, «...տասներորդ հնգամյակի առաջին իսկ օրերից համաժողովրդական սոցիալիստական մրցություն ծավալվեց հետևյալ լոզունգով. «Բարձրացնել արտադրության արդյունավետությունն ու աշխատանքի որակը՝ հանուն էկոնոմիկայի և ժողովրդի բարեկեցության հետագա աճի»:

Ուսումնասիրելով «Լենինյան ուղիով» շրջանային թերթի այս տարվա համարները՝ ցանկացել ենք պարզել, թե ինչպես են արծարծվել այդ կարևորագույն հարցերը նրա էջերում:

Տասներորդ հնգամյակի սկզբից իսկ թերթը պարբերաբար լույս է ընծայել հոդվածներ, պարզաբանել արդյունավետ աշխատանքի ձևերն ու մեթոդները, մրցությանը վերաբերող նյութեր ու կոչեր: Նորի, առաջավորի պրոպագանդմամբ լրագիրը ջանացել է նպաստել առաջավորների օրինակելի, արդյունավետ աշխատանքի մեթոդների տարածմանը:

Թերթն անդրադարձել է շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքային առօրյային, վեր հանել նրանց հաջողություններն ու թերությունները, ցույց տվել ձեռնարկությունների աշխատանքի արդյունավետությունն ապահովող գործոնները:

«Հայրենիքին տանք ավելի շատ ու բարձրորակ գյուղատնտեսական մթերքներ» նշանաբանով են գործում Իջևանի շրջանի աշխատավորները (№№ 27, 51):

Արժանի պարգև (№ 56), Աշխատանքային լուրջ նվաճում, Կատարել են կիսամյա պլանը (№ 56), Գառնառիչի գյուղի առօրյան (№ 57), Խոստումը կատարելու վճռականությամբ, Մրցում են ոչխարաբույծները (№ 62), Բարձրացնել պարարտանյութերի օգտագործման արդյունավետությունը (№ 76) և այլ հոդվածներում արտացոլված է շրջանի տնտեսության տարբեր բնագավառներում գյուղի աշխատավորների ծավալած պայքարը՝ որակի և արդյունավետության բարձրացման նպատակով:

Ծաղկավանի սովխոզի կթվորուհի Հեղուշ Զավրադյանը խոստացել է պլանով նախատեսված 28 տոննա 200 կգ կաթի փոխարեն ստանալ 33 տոննա 200 կգ կաթ. «... միայն և միայն մեր լավ աշխատանքով է հնարավոր կենսագործել բնակչությանը շատ և որակով կաթնամթերք մատակարարելու կուսակցության կարևոր պահանջը», գրում է նա (Սրտի թելադրանքով, № 36):

Շրջանի Ենոքավանի, Խաշթառակի, Ջողազի, Աչաջրի և այլ տնտեսություններ կատարել են մթերումների իրենց կիսամյա պլանները և ապահովել բարձր որակ (№№ 50, 56, 67, 70):

Սևքարի, Աչաջրի, Սարիգյուղի պետական տնտեսություններն աճեցրել են լավ ծխախոտահումք, հաջողությամբ է կատարվում նաև քաղուշարը: Ծաղկավանի պետական տնտեսությունը կատարել է կաթի, մսի տարեկան պլանները: Արդյունավետ են աշխատել նաև հացագործները. տասնհինգ տոննայով գերակատարվել է հացամթերման պլանը. արդեն սկսվել է ծխախոտահումքի հանձնումը: Նրանք ամեն ինչ անում են՝ պատվով կատարելու իրենց վրա դրված պարտականությունները (Պլանը սահման չէ, № 118):

Շրջանի կթվորները և հովիվները ժամկետից երեք ամիս շուտ զեկուցեցին պետությանը կաթ ու բուրդ վաճառելու տարեկան առաջադրանքների գերակատարման մասին: Նախատեսված 4160 տոննա կաթի փոխարեն արդեն պետությանն է վաճառվել 4174 տոննա կաթ, 58-ի փոխարեն՝ 60,9 տոննա բուրդ (Երեք ամիս շուտ, № 120):

Բերքառատ է Թալայի աշունը: Տնտեսության աշխատողները բարձր ցուցանիշների են հասել անասնամթերքների, անասնակերի, հացահատիկի, բանջարեղենի կուտակման ասպարեզում (№ 120):

Լավ մեկնարկ են վերցրել շրջանի գորգագործները: Բարեխիղճ աշխատանքով նրանք հասել են մեծ հաջողությունների, թողարկել բարձրորակ գորգեր: Գորգկոմբինատի կոմերիտականներն ստեղծել են որակի բրիգադա, որն ունի իր բյուրոն, այն վերահսկում է կոմերիտականների աշխատանքը (№ 60): Այդ ամենի մասին են պատմում 39, 44, 46, 70 համարներում հրապարակված հոդվածները:

Արդյունավետության և որակի համար են պայքարում նաև շրջանի շինարարները, փայտագործները, անտառտնտեսության և այլ ձեռնարկությունների աշխատողներ (№№ 49, 61, 74, 79, 107): Թերթում զգալի տեղ է հատկացված այդ պայքարը խթանող սոցմրցությանը. դրա մասին են վկայում Մրցության լենինյան սկզբունքներին հավատարիմ (№ 48), Մրցում են ընկերուհիները (№ 50), Մրցության խթանող ուժը (№ 70), Մրցության ստեղծարար ուժը (№ 57) և այլ թղթակցություններ: Լրագրի էջերում տպագրվել են նաև գիտական հոդված-խորհուրդներ (Արդյունավետության բարձրացման հիմնավորված ձևը, № 86 և այլն):

«Լենինյան ուղիով» լրագիրն անդրադարձել է նաև կուսակցական վերահսկողությանը: Ուժեղացնել կուսակցական վերահսկողությունը (№ 49) հոդվածում հատկապես վերհանված է բենտոնիտի, գորգագործական կոմբինատների, անտառտնտեսության, գլխավորող պանրագործարանի, Ակնաղբյուրի սովխոզի կուսհանձնաժողովների դրական աշխատանքը: Աչաջրի, Այգեհովտի պետական տնտեսությունների, փայտամշակման կոմբինատի կուսբյուրոները մեծ օգնություն են ցույց տալիս իրենց կուսհանձնաժողովներին, լսում նրանց հաշվետվությունները կատարված աշխատանքի վերաբերյալ: Այդօրինակ վերահսկողության բացակայության պատճառով մի շարք շինարարական կազմակերպություններում զգալի չափերի են հասնում խոտանը, պարապուրդները, բանվորների հոսունությունը:

Լրագիրն անտարբեր չէ նաև վատի նկատմամբ: Եթե լավի լուսաբանումը ոգևորում, խրախուսում է մարդկանց, ապա վատի ներկայացումը սթափեցնում, առավել զգոն է դարձնում նրանց: Այս հարցերի շուրջ էլ հենց Սարիգյուղի սովխոզի բանվոր-ծառայողների ժողովում հանդես եկավ ժողվերահսկողության խմբի նախագահ Ս. Ավետիսյանը: Սովխոզի դիրեկցիան երբեմն անուշադրության է մատնում բարձրացված հարցերը, միջոցներ չի ձեռնարկում եղած թերությունները վերացնելու համար (№ 51): Իրավացի է գորգկոմբինատի որակավորման ավագ վերահսկիչ Վ. Հովհաննիսյանը. «...ինչո՞ւ մոռանալ նրանց, ովքեր իրենց անորակ աշխատանքով տհաճություն են պատճառում մարդկանց»: Նման օրինակները եզակի չեն և, եթե ուզում ենք, որ որակի հարցը մշտապես լինի ուշադրության կենտրոնում, երբեք չպետք է անտեսել, մանրուք համարել դրա հետ առնչվող և ոչ մի հարց» (Նոր անելիքներ, նոր խնդիրներ, № 53):

Բորբոք պահել սոցիալիստական մրցության կրակը (№ 61). այս խորագիրն է կրում շրջկոմի պլենումի հաղորդագրությունը. անդրադառնալով շրջանի տնտեսությունների անբավարար աշխատանքին՝ պլենումում նշվեց, որ տնտեսությունները դեռևս շարունակում են պետությանը վաճառել ցածրորակ գյուղատնտեսական մթերքներ: Որակի, արտադրության արդյունավետության համար ծավալվող պայքարը պետք է ներթափանցի մեր աշխատանքի բոլոր բնագավառները:

Թերությունների վերացմանն են վերաբերում նաև Գարնանացանը գյուղթղթակիցների հսկողության տակ (№ 47), Այլ ուղի չկա (№ 59), Բոլոր ուժերը ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կատարմանը (№ 37) հոդվածները:

Շրջանային կուսակտիվի ժողովում շրջկոմի առաջին քարտուղար ընկեր Փափազյանն իր զեկուցման մեջ նշել է, որ գործարար կուսակցական քննադատությունը պետք է նպաստի աշխատանքի բոլոր տեղամասերում գործերի վիճակի բարելավմանը: Եվ այն ընկերները, որոնց հասցեին քննադատական դիտողություններ են արվել, հարկ է լրջորեն վերլուծեն իրենց գործունեությունը, միջոցներ ձեռնարկեն վերացնելու թերությունները և ոչ թե վիրավորվեն (№ 37):

Որակյալ և առատ բերք ստանալու համար անհրաժեշտ է գարնան գյուղատնտեսական աշխատանքները՝ հողերի պարարտացումը, սերմացուի պատրաստումը, ջրատարների մաքրումը, վարը և այլն, կազմակերպել լավագույն ձևով (Գարնան շնչով, № 38): Այդ հարցերին են անդրադարձել հեղինակները Նոր գարուն, նոր խնդիրներ (№ 41), Առատ բերքի ու բարիքի համար (№ 46), Բարձրացնել պարարտանյութերի օգտագործման արդյունավետությունը (№ 76) և այլ հոդվածներում:

Կուսակցության XXV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ընկ. Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Շատ բան է արվելու անասնապահության բնագավառում: Պետք է արագացնել ինտենսիվ մեթոդների արմատավորումը, բարձրացնել մթերատվությունը, անասունների և թռչունների գլխաքանակը»: Անասնապահության բնագավառում որակի և արդյունավետության բարձրացման անհրաժեշտ պայմաններն են դրանք, որոնց կարևորության պարզաբանումը, աշխատանքի առաջավոր ձևերի ու մեթոդների պրոպագանդումը այսուհետ ևս պետք է լինի «Լենինյան ուղիով» լրագրի առաջնահերթ պարտականությունը:

# СОДЕРЖАНИЕ






Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

*ՎՖ 03001 Պատվեր 2579 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ 15.200 Գինը 20 կոպ.*

*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 20/I 1977 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ավ. Իսահակյան փող. № 28:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՏՐԱԿՏՈՐԸ ՎԵՐԱԿԵՆԴԱՆԱՆՈՒՄ Է

*Խարկովի տրակտորների ինքնագնաց շասսիների գործարանը գյուղատնտեսական աշխատանքների համար սկսել է թողարկել Т—16М մակնիշի ժամանակակից մեքենաներ՝ ավելի քան 30 անուն կախովի սարքերով: Շարժիչի հզորությունն ավելի մեծ է, աշխատանքային արագությունը՝ բարձր: Փորձարկումները ցույց տվեցին, որ տրակտորի տեխնիկական ռեսուրսներն այժմ հասնում են վեց հազար ժամի:*

## ԴԵՂԱՏՈՄՍՈՎ... ՀԱՑ

*Ուզբեկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի միկրոբիոլոգիայի բաժնի մի խումբ գիտնականներ ստեղծել են թթվադիմացկուն, ջերմադիմացկուն և բուրավետ խմորիչների նոր նմուշներ, որոնք խմորին հաղորդում են բուժիչ հատկություն: Կլինիկական փորձարկումները ցույց տվին, որ այդպիսի հացը օգտակար է ստամոքսա-աղիքային մի շարք հիվանդությունների, ինչպես և շաքարախտի բուժման համար: Խմորիչներն արժանացել են բժիշկների դրական գնահատականին: Տաշքենդի, Անդիժանի և Կոկանդի գործարաններն սկսել են թողարկել բուժա-դիետիկ հացի նոր տեսակներ:*

## ԿԱՊԱՎՈՐՆԵՐԻ ՕԳՆԱԿԱՆՆԵՐԸ

*Կուրսկի «Շչյոտմաշ» գործարանն սկսել է թողարկել «Օնեգա—111—3Э» կոմպլեքսները, որոնք հնարավորություն են ընձեռում կրկնապատկելու փոստադրամարկղային աշխատատար գործողությունների արագությունը: Այդ սարքավորման առաջին պարտիան ուղարկվել է Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի և Ռիգայի կապի ձեռնարկություններին:*

*«Օնեգա»-ի օգնությամբ մեքենայացվում և ավտոմատացվում է ավելի քան տասը տեսակի փոստային հիմնական ծառայությունների փաստաթղթերի ձևավերպում— փոխանցումների, գնահատված ծանրոցների, նամակների ընդունումը և վճարումը:*

## ՔՍԻԼԻՏԸ ՈՍԿՐԱՓՈՒՏԻ ԴԵՄ

*Ֆինն գիտնականները գտել են, որ շաքարին փոխարինող քսիլիտը՝ քաղցրահամ բազմատոմ սպիրտը, շաքարախտով հիվանդների սննդարաժնում կարող է կանխել ատամի ոսկրափուտը (կարիեսը): Շաքար օգտագործողների համեմատությամբ 90 տոկոսով պակասել է քսիլիտ գործածողների ատամների քայքայումը: Քսիլիտն արգելակում է ոսկրափուտի հարուցիչների բազմացումը: Ատամների լրիվ պահպանման համար բավական է օրական ընդունել 10 գրամ քսիլիտ: Ֆինլանդիայում սկսել են թողարկել «քսիլիտոլի» բուժիչ ատամաքսուկ և քսիլիտամաստակ:*

## ՎԻՐԱԲՈՒՅԺԻ ԼՈԿԱՏՈՐԸ

*Ախտորոշման տեխնիկական զինանոցը վերջերս հարստացավ յուրօրինակ լոկատորով— ուլտրաձայնային «УДА—871» էխոսկոպով, որի օգնությամբ վիրաբույժն արագ ու ճշգրիտ կարող է գտնել տվյալ օրգանի ախտահարված հատվածը:*

*Համանման սարքեր թողարկվել են և առաջ, բայց «УДА—871»-ն ունի մի շարք առավելություններ՝ փոքր է, թեթև, ճշգրիտ և այդ ամենի շնորհիվ այն օգտագործելի է ո՛չ միայն ստացիոնար պայմաններում. վիրահատության ժամանակ գործիքին կցվում է հատուկ ախտորոշիչ սարք:*

## ՌԵՏԻՆԻ ՆՈՐ ՀՈՒՄՔ

*Վառարանային մուրն անփոխարինելի բաղադրամաս է, յուրահատուկ հումք ռետինե շատ խառնուրդների համար: Դրա հատկություններով են մեծապես պայմանավորված ռետինի որակը, մեքենայի անվադողերի դիմացկունությունը, սռնակալների ամորտիզացիոն երկարակյացությունը:*

*Մեր երկրի մասնագետները մշակել են մեծ քանակությամբ վառարանային բարձրորակ մուր ստանալու հատուկ տեխնոլոգիա, որը հնարավորություն է ընձեռում ռետինն ավելի ամուր դարձնելու:*

*Անվադողերի երկարատև օգտագործման հաշվին միայն 10 հազար տոննա մրահումքից ստացվում է 3,2 միլիոն ռուբլի տնտեսական օգուտ:*